
ՄԱՅԻՍԻ 9-Ը
ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ
ՊԱՏԵՐԱԶՄՈՒՄ
ԳԵՐՄԱՆԱԿԱՆ
ՖԱՇԻԶՄԻ
ՆԿԱՏՄԱՄԲ
ՍՈՎԵՏԱԿԱՆ
ԺՈՂՈՎՐԴԻ
ՏԱՐԱԾ
ՀԱՂԹԱՆԱԿԻ
ՕՐՆ Է։

# ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ
№ 5 ● 1985

Լույս է տեսնում 1923 թվականից





ՀԱՂԹԱՆԱԿ–40

ԱՂՎԱՆ ՎԱՐԴԱՆՅԱՆ

# Յոթ սքանչելի կյանք

Այսպես է եղել: 1940 թվականին նրանք ավարտել են դպրոցը: Քայլ են արել գնալու իրենց ճանապարհը, բայց սկսվել է Հայրենական մեծ պատերազմը, և տասնիննամյա այդ պատանիները այլ ընտրություն չեն ունեցել: Մեկնել են ռազմաճակատ: Այդպես է: Երբ հայրենիքը է կանչում, բոլորն ունենում են միայն մեկ ճանապարհ, համախմբվում, կանգնում են կողք-կողքի: Նրանցից յոթը չվերադարձան: ՌՈՒՇՏՈՒՆԻ ՋՈՀՐԱԲՅԱՆ, ԳՐԻՇԱ ԾԱՏՈՒՐՅԱՆ, ՆՇԱՆ ՀԱԿՈԲՅԱՆ, ԳԱԳԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ, ՀԱԿՈԲ ՂՈՒԼՈՅԱՆ, ՎԱԶԳԵՆ ՄԻՆԱՍՅԱՆ, ՄԻՇԱ ՍԱՌԱՖՅԱՆ. այս անունները այսօր նայում են Հրաչյա Աճառյանի անվան № 72 դպրոցի մուտքի մոտ ամրացված մարմարե սալիկից: Նայում ու ստիպում են վերստին խորհել, թե այդ ի՞նչ զարմանալի ուժ է, որ ետ է մղում անձնականը և բարձրացնում մարդուն անչափ վեր, բարձրացնում հայրենիքի գոհասեղանին:

Կանգնել էի մարմարե սալիկի առջև ու









ՆՇԱՆ ՀԱԿՈԲՅԱՆ
ՌՇՏՈՒՆԻ ՋՈՀՐԱԲՅԱՆ
ԳՐԻՇԱ ԾԱՏՈՒՐՅԱՆ
ՄԻՇԱ ՍԱՌԱՖՅԱՆ
ՎԱԶԳԵՆ ՄԻՆԱՍՅԱՆ
ՀԱԿՈԲ ՂՈՒԼՈՅԱՆ
ԳԱԳԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ

միայն մեկ ցանկություն ունեի՝ մտնել դպրոց, տեսնել, զգալ, որ երեխաները հիշում, ճանաչում ու գիտակցում են նրանց սխրանքը, որ նրանց հիշատակը ապրում է:

— Ամեն տարի Մեծ հաղթանակի օրը բազմամարդ է լինում դպրոցը,— հաղորդում է ինձ դպրոցի ջոկատավար Ռոզա Կարապետյանը,— գալիս են զոհվածների հարազատները, համադասարանցիները: Պիոներական դրուժինան կանգնում է հանդիսավոր տողանի: Լսվում են նրանց անունները կրող ջոկատների զեկույցները: Խոսում, հուշեր են պատմում հյուրերը: Ամեն անգամ նոր նյութերով է հարըստանում մեր դպրոցի հերոս սաների մասին պատմող հավաքածուն: Մոտակա պուրակի ծառերից յոթը անվանել են զոհվածների անուններով: Երեխաները առանձնակի հոգատարությամբ ու սիրով են խնամում դրանք: Այդ օրը պիոներներն ու հյուրերը պատվո պահակ են կանգնում ծառերի մոտ: Դպրոցի լավագույններից լավագույն աշակերտները դասասենյակներում նստում են հերոսների անունները կրող նստարաններին: Շատերն են ձգտում արժանանալ այդ պատվին: Նրանք հասկանում են, որ այսօրվա իրենց երջանկության համար են զոհվել նրանք և նրանց հիշատակը վառ պահելու ամենաճշմարիտ ուղին իրենց պարտականությունների բարեխիղճ կատարումն է, այսինքն՝ լավ սովորելը: Մոտենում է Մեծ հաղթանակի 40-ամյակը: Պիոներները եռանդագին նոր նյութեր են հավաքում: Հաղթանակի օրվա շեմին պատրաստ կլինեն յոթի սքանչելի կյանքը արտացոլող ալբոմները:

Ես հպվում եմ խունացող լուսանկարներին, անընթեռնելի դարձող նամակներին և զգում եմ այն սրբազան սարսուռը, որ յուրաքանչյուր նման հանդիպման ժամանակ համակել է դպրոցականներին: Այդ սարսուռր մեզ մոտեցնում է նրանց՝ հավերժ պատանի, 19, 20, 22-ամյա այն հերոսներին:

Ամեն տարի Հաղթանակի օրվան նըվիրված հանդեսի վերջում ներկաները հավաքվում են 1940 թվականի շրջանավարտների դասարանում: Ներկա-բացակա է անում զոհվածների առաջին դասարանի ուսուցիչ Կարո Չերքեզյանը: Ու միշտ նրանք ներկա են: Այդ նրանք են վարում դասը: Հայրենասիրության դասը:

ՖԵԼԻՔՍ ՇԱՔԱՐՅԱՆ

# ՄԱՐԴ ԷՐ, ՄԵՂՔ ԷՐ...

ՆԿ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

Արևը կախվել էր Ավանաքարի վրա, դեղնակարմիր քարաժայռերը ասես շիկացել էին նրա հրից: Ջաղի ձորում հովիտը արծվի նման տիրականորեն փռել էր թևերը: Իսկ մենք երեք ընկերներով նստել էինք վայրի խնձորենու խիտ սաղարթի տակ և ուտում էինք տըներից բերած հաց ու պանիրը, կարմիր լոլիկն ու մատղաշ վարունգը: Մեր ձեռքերն ամբողջովին կարմիր էին, մինչ այդ վազվզել էինք անհանգիստ այծերի ետևից, մոռ ու մոշ կերել, ներկվել էին նաև մեր շուրթերն ու այտերը: Ես երկու գառ էի հանդ տանում, Մարգարը՝ չորս, թե հինգը, իսկ Գուրգենը իսկական այծարած էր, նրանք երեսուն-քառասուն այծ էին պահում: Մենք այդ պահին ուտում էինք հենց նրանց այծերի կաթից պատրաստած համեղ պանիրը:

Կածանի վրա, ցածում երևաց մի մարդ: Ետևից քաշում էր կաղ ձիու սանձը: Գուրգենը զգուշացրեց.

—Նեմեց է, գերի է... որ խոսի՝ չխոսեք:

Ես նրան հարցրեցի.

— Վատ բան է արե՞լ նա քեզ:

— Չէ՛, խեղճ մարդ է,— պատասխանեց,— ձիապան է, ախոռում էլ քնում է:

— Ինձ էլ է թվում շարքային զինվոր է եղել,— ասացի,— մեր գյուղացի թրջված Կիրակոսի նման բան է:

— Մի առավոտ,— մտաբերեց Գուրգենը,— սա գործից ուշացել էր, իրենց մեջ մի ածդահա կար, անխղճորեն ծեծեց նրան:

Մեր կողքին Մարգարը հոգոց քաշեց:

— Հինգ հորեղբայրներս գնացել, չեն եկել... Դրանց երեսը չեմ ուզում տեսնել:

Գուրգենը խոր հառաչանքով լրացրեց ընկերոջ խոսքը.

— Պուճուր հորեղբայրս ի՞նչ մաթեմատիկա է իմացել... որ ապրեր՝ գիտնական էր դառնալու, ինձ էլ կօգներ:

Գերին կանգնում, շոյում էր կաղ ձիու դունչը, խոսում նրա հետ, երևի հուսադրում և կրկին դանդաղ շարունակում վերելքը: Ես էլ գիտեի, որ նա մյուս գերիներից առանձին է ապրում, խնամում գործարանի շինարարության ձիերը: Մարմնեղ, հաստոտ հովատակները անդադրում շինանյութեր էին կըրում, տակառներով ջուր տանում բանվորներին: Ձիանոցը ընկուզենիների պուրակի վերևն էր, դպրոց տանող ճանապարհի վրա:

Տխուր մարդ էր գերմանացին, անունը՝ Հանս: Ազատ պահերին մենակ նստում էր ընկուզենու տակ, մեջքը բնին հենում ու քթի տակ երգում իր լեզվով: Տխուր էին նրա երգերը, դարդոտ մարդ էր: Մի շուն էր պահում, որին չէր կապում, բայց սա էլ չէր թափառում, գերադասում էր տիրոջ հետ լինել:

Ձիանոցից գործարանի շինարարություն ընկած ճանապարհը երկար էր, ոլորապտույտ, խորդուբորդ: Միշտ ծեգին Հանսը ոտքի վրա էր: Ձիերը աշխույժով լծում էր բեռնասայլերին և շարքով հասցնում շինարարություն, հանձնում սայլվորներին, որոնք բեռնասայլերը նրան վերադարձնում էին երեկոյան, աշխատանքից հետո:

Երեկոները ես ուշ էի քնում, դասերս պատրաստելուց հետո բարձունքից, մեր տան պատըշգամբից, հետևում էի Հանսին, նրա մասին հորինելով արկածային պատմություններ: Հանսը ինձ հաճախ տեսնում էր նաև ձիանոցի մոտերքում, բայց երևի մտքով չէր անցնում, որ հետևում եմ պարտված թշնամու զինվորին: Ամեն անգամ ժպտում էր, հասկացնում, որ չվախենամ իրենից, հրավիրում էր նստել իր կողքին: Հանսն իր խոսքերը ինձ թարգմանում էր ձեռքերի լեզվով: Թել ու ասեղ էր պետք լինում, խնդրում էի՝ մայրս տալիս էր, տանում էի նրան: Մի անգամ էլ հասկացրեց, որ սղոց է ուզում, տարա, գործածեց ու վերադարձրեց:

Հիմա, մեր մոտով անցնելիս, Հանսը մեզ նայեց բարեկամաբար, ժպտաց:

Ինձ թվաց, որ ուզում է մոտներս կանգնել, բայց քանի որ հացի էինք նստած, փոխեց մտադրությունը: Բարձրացավ անտառափեշ, ուր ծննդահար խոտ էր, և ձին թողնելով, որ արածի, սկսեց ինչ-որ բույսեր հավաքել:

Ես նայեցի ընկերներիս.

— Հաց ու պանիր տանեմ, ուտի... մեղք է:

Մարգարը դեմքը շրջեց, իսկ Գուրգենը՝ մռլտաց.

— Ուզու՞մ ես քեզնից խռովեմ:

Արդարանալու փորձ չարեցի, պատերազմում հարազատներ կորցրած իմ ընկերները իրավունք ունեին այդպես վարվելու: Նայեցի Գուրգենի վերնաշապիկին ու հիշեցի. փոքր հորեղբոր վերնաշապիկն էր, արդեն մի քանի օր էր, ինչ հագնում էր ինքը: Գուրգենն ասես կարդաց իմ մտքինը, աչքերն արցունքով լցվեցին: Իսկ Մարգարը հայացքով խեթեց ինձ ու անխոս հեռացավ, սկսեց իջնել բանավան:

Գուրգենը նրա ետևից ձայնեց.

— Գնա... տես ի՞նչ եղան այծերը:

Մարգարը ցածրաձայն պատասխանեց.

— Հացի պատառը բկիս է մնացել, ջուր խմելու եմ գնում:

— Լավ, ես կգնամ,— ասաց Գուրգենը, նստած տեղից բարձրացավ և անշտապ գնաց Ավանաքարի կողմը:

Ես չգիտեի իմ անելիքը: Ակամա նայեցի Հանսի կողմը: Նա հավաքած խոտերը ծեծում էր սալ քարի վրա: Ծեծած խոտը փռեց հնամաշ մի կտորի վրա և կապեց ձիու վերքոտ ոտքը: Գուրգենը նեղ արահետով բարձրանում էր Ավանաքարի քերծերը, ուր մագլցել էին չարաճճի այծերը: Մարգարը չէր երևում: Երևի մոռ կամ մոշ էր քաղում, երևի չէր ուզում մոտենալ ինձ, որ ակամա միմյանց չնեղացնենք: Տխրությունը տխրություն, բայց գնացի Գուրգենի ետևից, քանի որ կամակոր այծերին իրիկնանալիս դժվարությամբ էինք իջեցնում քարափներից: Ավանաքարը ծեր լեռ էր, որ մաշվելով-մաշվելով նմանվում էր հարուստ բուսականության մեջ ընկած հսկայական երկնաքարի: Հեռվից երևում էին ժայռերի արանքներում արածող այծերը: Արագացնելով քայլերս, ավելի առաջ գնացի ու հայացքով սկսեցի փնտրել Գուրգենին: Բնական քարասանդուղքով նա հանգիստ բարձրանում էր: Ավելի վեր, մի ափաչափ տափարակի վրա անհանգիստ մկկում էր Ներին:

Ես շնչակտուր ձայնեցի Գուրգենին.

— Սպասի՜ր, ա՛յ տղա... ուրիշ կածան էլ կա:

Նա պատասխանեց.

— Ոչինչ, ես արդեն հասնում եմ,— կանգ առավ և մի պահ հանգստացավ:

— Ախր, տափարակից ետ դառնալու ճանապարհ չկա,— անհանգստացա ես:

— Այծը ո՞նց է թռել:

— Այծը այծ է:

— Գլուխ կհանեմ:

Իսկ այծը մկկոցը չէր կտրում, և տղան շարունակեց բարձրանալ:

Ես ետ դարձա, ձայն տվեցի Մարգարին, այս ու այն կողմ վազեցի: Մարգարը չարձագանքեց: Բարձրացա մի ծառի և ձեռքերս գալարելով բերանիս մոտ՝ մի քանի անգամ էլ ձայնեցի: Մարդարը ո՛չ երևում էր, ո՛չ ձայն հանում:

Հանսը, որ էլի խոտ էր հավաքում, բարձրացրեց գլուխը, նայեց իմ կողմը և անհանգստացած եկավ դեպի ինձ:

Մինչև Հանսի հասնելը Գուրգենը կտրեց այծի անցած ճանապարհը և թեք դարավանդից թռավ տափարակի վրա: Ոտքի կանգնելով, նա գոռաց.

— Ներին օ՛ձ է սատկեցրել,— մի փայտով բարձրացնելով, ցույց տվեց սատկած օձը:

— Դեն գցիր,— կանչեցի ես:

Նա փայտի հետ շպրտեց օձը:

— Ո՞նց ես իջնելու,— կանչեցի ես:

Նա շուրջը նայեց, այս ու այն կողմ գնաց, ձեռքը մեկնեց դարավանդին, չհասավ և տխուր պատասխանեց:

— Չգիտե՛մ:

Հանսը նրան ինչ-որ բան ձայնեց: Գուրգենը լարեց լսողությունը: Հանսը կրկնեց: Գուրգենը նեղսրտեց:

— Ի՞նչ է ասում, է՛...

— Ասում է՝ մի՛ վախեցիր,— պատասխանեցի ես:

— Ասա՝ շնորհակալ եմ,— ընկերս իրեն չէր կորցրել, կատակում էր:

— Մենք մի բան կանենք,— ձայնեցի նրան ու հուսահատ նայեցի Հանսին:

Նա ինձ հասկացրեց, որ շուտով կվերադառնա, վազեց ձիու մոտ ու բերեց ձիու ամուր պարանը, փոքրիկ, բայց սուր կացին՝ երկաթե կոթով: Գլխի գցեց, որ հետևեմ իրեն:

Մենք բարձրացանք այլ կածանով ու հավասարվեցինք Գուրգենին: Մեզ բաժանում էր մի ոչ մեծ կտրվածք, որ այծը կարող էր թռչելով անցնել:

Գուրգենը զարմանալի հեզությամբ լսում էր Հանսին և ձեռքերի շարժումներին հետևելով, հասկանում նրա մտքերը: Ու երբ Հանսը քար կապելով նրան նետեց պարանի ծայրը, Գուրգենը պարանը կապեց այծի պոզերից... Ներու թռիչքը հաջող անցավ, չհաշված, որ քերծեց մի ծունկը և քիչ էր մնում ցած գլորեր փրկարարին: Պարանը պոզերին, կաղալով, այծը ցած վազեց: Ես հետևեցի նրան, որ այս անգամ էլ պարանի պատճառով փորձանքի մեջ չընկներ:

Երբ պարանն ուսած վերադարձա, Հանսը տապալված երկու ծառ էր կողք-կողքի բերել, կամուրջ կապել, որի վրայով շեք արած անցնում էր իմ անվախ ընկերը: Երբ նա մո-



տեցավ, Հանսը պառկեց գետնին և մեկնեց երկար ձեռքը: Գուրգենը կառչեց նրանից ու հողի վրա ոտք դնելով, անսպասելի գրկեց Հանսին: Հանսը պայծառացած դեմքով նրան արագ-արագ բան էր ասում: Վայրէջքը հեշտ էր... Հանսն ասես մեզանից լավ գիտեր Ավանաքարը:

Դեռ ճանապարհին Գուրգենն ինձ ասաց.

— Էս մարդը հոգնեց, շատ չարչարվեց, հաց ու պանիր տանք ուտի:

— Վարունգ ու լոլիկ էլ է մնացել,— հիշեցի ես:

— Լավ է, որ մնացել է... բայց դու կտաս: Ես առարկեցի.

— Արժե, որ դու տաս:

— Լավ, կնստենք, միասին հաց կուտենք:

Երեքով համով հաց կերանք:

Հայտնվեց Մարգարը, որ մի դույլ մոշ էր հավաքել: Մենք նրան բան չպատմեցինք, իսկ նա մեզ հիշեցրեց, որ ոչխարներն ու այծերը հավաքելու ժամանակն է, և զարմացավ, որ չարձագանքեցինք:

— Ինձնից նեղացել եք,— լացակումեց Մարգարը:

— Չէ՛,— ասացինք,— քեզ համար անհանգստանում էինք:

— Դույլը երեկ էի թփերի մեջ պահել,— խեղճացավ Մարգարը,— երեկ մենակ էի, չըկարողացա մոշ հավաքել:

Ջիու սանձը բռնած՝ մոտեցավ Հանսը, արձակեց ձեռքի ժամացույցը և գորովանքով կապեց Գուրգենի թևին: Ձեռքի շարժումով հասկացրեց, որ մենք լավ տղաներ ենք, որ անվախ Գուրգենը արժանի է նվերի: Գուրգենը այդպիսի նվեր չէր կարող երազել, գյուղում մեր հասակակիցներից ոչ մեկի թևին ժամացույց չէինք տեսել:

Գերու գնալուց հետո Մարգարն ուզեց լսել ժամացույցի ձայնը և ուժի զոռով ընկերոջ ձեռքը պահում էր իր ականջի տակ:

Գուրգենն ուշքի եկավ, սրտնեղած փախցրեց ձեռքը ու վճռական ասաց.

— Վազեմ, վերադարձնեմ ժամացույցը:

Մարգարը զարմացավ.

— Ինչո՞ւ... Չես ուզում՝ տուր ի՛նձ:

— Հիմա՛ր, որ ժամացույց չունի, նա կուշանա աշխատանքից... կբարկանան, կպատժեն, մեղք է:

Մարգարը վազեց նրա ետևից, ճանապարհին թևից հանելով ժամացույցը... Եվ վերադարձավ առանց ժամացույցի:

— Լա՛վ արիր,— ասացինք մենք:

— Իհարկե... մեղք է, մարդ է...

Գերմանացի զինվորն այլևս զինվոր չէր, մարդ էր... և մեղք էր, քանի որ մարդ էր:



# ՀԱՂԹԱՆԱԿ-40



# Ով ապրում է հետնորդների մեջ, նա անմահ է

Գրասեղանին կուտակված են տարբեր տարիներին թերթերից կտրտված-հանված հոդվածներ, դիմում-հարցումներ, պարգևատրության թերթիկներ, լուսանկարներ, նամակներ: Այդ ամենի մեջ Ռազմիկ Բալասանյանի համար ամենաթանկը հորից ստացված միակ նամակն է:

«Ծուշանիկ, Ռազմիկի և Ջեմմայի մոտ իմ մասին շատ չխոսես: Կարոտ կծնվի, ինձ շուտ տեսնելու ցանկություն: Աշխատիր ավելի շատ քեզ հետ կապել: Կգամ, էլի «կհեղաշրջեմ» բալիկներիս դեպի ինձ այնպես, որ դու էլ խանդես...»:

Ավելին չհասցրեց գրել: Զոհվեց:

Ռազմիկը հորը աղոտ է հիշում: Հիշում է այնպես, ինչպես յոթերորդ դասարանում գրել է ազատ թեմայով շարադրության մեջ. «Մայրս չգիտեմ ինչու լաց էր լինում: Ո՛չ ես էի չարություն արել, ո՛չ Ջեմման, բայց լաց էր լինում: Հայրիկը շոյեց մորս մազերը: Ես նախանձեցի, բռնեցի հորս փեշից, որ իմ մազերն էլ շոյի: Նա գրկեց ինձ, մյուս ձեռքով էլ Ջեմմային, ու մենք գնացինք խանութ: Մի մեծ տոպրակ կոնֆետ գնեց: Երբեք հայրս այդքան շատ կոնֆետ չէր գնել: Հետո... հետո էլ ոչինչ չեմ հիշում, էլ չեմ տեսել հայրիկիս»:

Մնացածը պատմում են, ահա, գրասեղանին կուտակված թղթերը: 1942 թ. փետրվարի 3-ի «Պրավդան» մայրն առավ ու պահեց նամակի փոխարեն: Այնտեղ գրված էր. «Ծարովը անցավ առաջ: Նա գիտեր, որ իր թիկունքում ընկերներն են, որոնք արդեն շտապում էին օգնության: Նրանց օգնում էր Աբիսակ Բալասանյանը, որի ձեռքի տակ կադրայինն ոչ մի զինվոր չկար, երբ ստացավ Ծարովի ցուցումը: Նա հավաքեց խոհարարին, երաժիշտներին, տնտեսվարներից և, հարձակվելով, ճեղքեց թշնամու օղակը...»:

Կինը նամակ ստացավ.

«Քաղաքացի Ծուշիկ Բալասանյան, գերմանական ֆաշիզմի դեմ պայքարում ձեր ամուսինը՝ Աբիսակ Գրիգորի Բալասանյանը, հրամանատարության մարտական առաջադրանքները օրինակելիորեն կատարելու, բարեխղճություն, արիություն ցուցաբերելու համար Կարելական զինվորական ռազմաճակատի № 0384 հրամանով 23. 07.1942 թ. պարգևատրվել է Լենինի շքանշանով»:

«Կրասնայա զվեզդա» թերթի 1941 թ. նոյեմբերի 29-ի համարում տպված է զինվորական թղթակից Ի. Դեյգենի ռեպորտաժը ռազմի դաշտից: «Փոքրիկ ջոկատով մենք պահում էինք դիտակետը: Թշնամին հարձակվեց մեծ ուժերով: Թվում էր, ուր որ է մեզ կջարդեն: Այդ րոպեին ասես գետնի տակից կողքերիս բուսնեց Բալասանյանը: Մենք տեսանք,

թե նա ինչպես պառկեց քարերին և ավտոմատից կրակահերթ բացեց թշնամու վրա: Երբ ֆաշիստները մոտեցան, ավագ լեյտենանտը գոռաց. «Առա՛ջ» և մենք անցանք հարձակման, մի քանի անգամ ետ մղելով թշնամուն: Այդպիսի մի հարձակման ժամանակ թշնամու գնդակը խոցեց կոմունիստ Բալասանյանի կուրծքը: Նա ընկավ ձեռքերը առաջ պարզած, կարծես կոչ անելով առաջ գնալ...»:

. Պատերազմից շատ տարիներ հետո Ռազմիկ Բալասանյանը փնտրել է հորը, փնտրել կենդանի մարդկանց հիշողություններում: «Թանկագին Ռազմիկ, ստացա ձեր նամակը: Նամակի վերջում գրել եք. «Ուղարկում եմ 1942 թվականին մեզ հասցեագրված ձեր նամակի կրկնօրինակը, որը կօգնի Ձեզ հիշելու Աբիսակ Բալասանյանին»: Դրա համար շնորհակալություն: Բայց ես Աբիսակին հիշում եմ առանց դրա էլ: Նա քաջ մարտիկ էր, անողոք՝ թշնամու նկատմամբ, նաև՝ բարի: Հոգով արի էր: Շատ էր սիրում կատակել, և այն էլ 1941 թվականին, երբ մենք ունեինք ռազմական անհաջողություններ և այնքան էլ հեշտ չէր մնալ հոգով արի ու մանավանդ՝ կատակել: Ձեր հայրը հեռատես մարդ էր: Եվ այդ ես զգացել եմ մեր մի քանի կարճ հանդիպումների ժամանակ: Ես անմահացրել եմ Աբիսակի փառքը «Բոլորովին վերջերս» գրքիս «Նա չէր կեղծում» հատվածում: Սրտանց ցանկանում եմ Ձեզ բարին, իսկ ամենից առաջ ուզում եմ, որ դուք նման լինեք Ձեր հորը՝

Ձեր՝ Ի. Բրաժնին»:

Այսպիսի նամակներ Ռազմիկը շատ ստացավ հոր ընկերներից. հիշում ենք... նա ապրում է մեզ հետ, նա կենդանի է...

Ասում են, ով ապրում է իրենից հետո ծնվածների մեջ, նա անմահ է:

Ավագ լեյտենանտ Աբիսակ Բալասանյանն ապրում է:

Գրասեղանին դրված թղթերից յուրաքանչյուրը դրա անխոս վկան է: Մուրմանսկ—Պեչենգա ճանապարհի 81-րդ կիլոմետրում կանգնած հուշասյունը, հայրենի Նախիջևանի Ջնաբերդ գյուղում կառուցված հուշարձան աղբյուրը՝ նույնպես: Ապրում է իր որդու՝ Ռազմիկ Բալասանյանի և նրա որդիների մեջ:

Ապրում է աշխարհին ու մարդկանց անամպ երկինք պարգևած անհայտ ու հայտնի հերոսների հետ:

**ՇՈՒՇԱՆ ՂԱԶԱՐՅԱՆ**

ԳԱՅԱՆԵ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

# Բնանկար

Կապույտ-կապույտ երկինք.
Պայծառ ժպիտ՝ արև,
Ու երկնքից կախված
Բարձրաքանդակ սարեր:
Լույսը՝ բուռ-բուռ ցորեն՝
Փռված կանաչ արտին,
Քամին երգն է նորել՝
Կորած երգը իր հին:
Ծառերն՝ արձակ դաշտում
Երկինք պարզած ձեռքեր,
Հողի շունչը տաքուկ
Դանդաղ ելնում է վեր:

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



# ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ ԵՆ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԸ

Արթուր Մարտիրոսյանը, որի բանաստեղծությունները ներկայացված են ստորև, ծնվել է 1968 թ. Ադրբեջանական ՍՍՀ-ի Շամխորի շրջանի Չարդախլու գյուղում։ 10-րդ դասարանի աշակերտ է և տեղի գրական խմբակի անդամ։

## Հայաստան

Հայո՛ց աշխարհ, մեր նոր ու հին,
Ինչքա՜ն մահ ես տեսել ու ամպ,
Բայց անցել ես դու քո ուղին
Մի առնական հպարտությամբ։

Ողջ մարդկության պատմություն է քո տարիքը,
Ամեն քարդ, ամեն ժայռդ,
Հողիդ ամեն պատառիկը։

Թե՛ վայրէջքի դժվար պահին, թե՛ վերելքի,
Սուր ենք պարզել ընդդեմ մահին՝ միշտ ձեռք-ձեռքի։
Նույն մորից ենք ծնվել ասես մենք կաթոգին
Ու նույն թառի վրա լարել
և՛ քո հոգին,
և՛ իմ հոգին։
Ո՞վ կարող է երգը հատել
Կամ մեղեդուց բառն անջատել,
Անցել ենք մենք մահվան կիրճով,
Ժայռի գլխով, ձորի միջով,
Սար ու քարով, փշոտ ճամփով
Հարթավայրով...

Թե կարող են բառը կիսել,
Բառն սպանել կամ հրկիզել,
Գուցե այնժամ և բաժանեն
քեզ՝ ինձանից
ինձ՝ քեզանից։

## Ուրիշի լույսով

Նայի՛ր, ինչպե՜ս է պսպղում բակում
Հեկորն ապակու.
Չունի ո՛չ լույսի սեփական մի ցոլք.
Ո՛չ էլ ջերմացնել կարող է մեկին,
Բայց արևի տակ՝ ուրիշի լույսով
Շլացնել է նա ուզում ամենքին...

## Ոսկի ձեռքերը

Մի ոսկին գանձ չէ,
Հազարը՝ նույնպես,
Դրանք բոլորը՝
Փոքրից մինչև մեծ,
Հռնավորի պես
Փականքի տակ են։
Մի ոսկին գանձ չէ,
Հազարը՝ նույնպես։

Ոսկին չգիտե
Հրճվել-երգելը.
Սիրում է նզնել
Սրել կրքերը։
Մինչդեռ երգերով
Աշխարհն են պահում
Ոսկե ձեռքերը։

## Կաղնին

Կայծակը խփեց կանաչ անտառին,
Կաղնին դեմ տվեց իր կուրծքը նրան,
Եվ արտասվեցին ծառերը լռին.
Աչքերը՝ կաղնու վերքին հուրհրան։

Բայց կաղնին ասաց. «Իզուր եք լալիս,
Վերքս նշանն է իմ հերոսության,
Ոչ մի հաղթություն լացով չի գալիս,
Լացով չեն պահում պատիվը նոր տան»։

## Օդապարիկս

Օդապարիկս, օդապարիկս...
Բաց թողի, հալվեց, մի պոռւ դարձավ,
Կապույտ թռչուն էր, թռավ ձեռքիցս,
Ձուլվեց աստղերին, չվերադարձավ։

Հրաշք մի աշխարհ տարավ նա իր հետ,
Երազ էր ասես՝ և՛ կար, և՛ չկար...
Օդապարիկս, օդապարիկս
Իմ մանկությունն էր, գնաց, ետ չեկավ։

Քաջարանի արվեստի մանկական դպրոցը քիչ սաներ ունի, սակայն այստեղ բոլորն են շնորհալի: Նրանց նկարներում սերն է մեր պապերի գույնզգույն աշխարհի նկատմամբ և լեռնցու մաքրահոգի պարզությունը՝ ուղղված իր շրջապատին ու աշխարհին...



ՄԱՐԻՆԵ ԲԱՂԴԱՍԱՐՅԱ՛Ն
«Նատյուրմորտ»

ՀԱՅԿ ԳԱԼՍՏՅԱՆ
«Փառք զոհվածներին»





# ՈՂՋՈՒՅՆ, ՓԱՌԱՏՈՆ




## Բուխարեստ 1953

1953 թվականի օգոստոսի 2—16-ը Ռումինիայի մայրաքաղաքում հավաքվեցին 111 երկրներից 30 հազար երիտասարդներ: Փառատոնից ոչ շատ առաջ, հուլիսին դադարեցվեց ամերիկյան իմպերիալիզմի կողմից Կորեայում սանձազերծված պատերազմը, որի ավարտի համար պայքարում մեծ էր և երիտասարդության դերը: 4-րդ փառատոնի մասնակիցները այդ իրադարձությունը նշեցին մեծ տոնահանդեսով: Փառատոնի նշանաբանն էր. «Ոչ, մեր սերունդն այլևս չի ծառայի մահվանն ու ավերածություններին»: Փառատոնի մասնակիցներին ողջույններ էին հասնում աշխարհի բոլոր անկյուններից: Էգինա բանտի (Հունաստան) քաղբանտարկյալները գրել էին. «Թեև երկաթյա շղթաներն ու բանտի պատերը թույլ չեն տալիս մեզ մասնակցելու փառատոնին, բայց մեր մտքերն ու սրտերը ձեզ հետ են»:




## Վարշավա 1955

Համաշխարհային 5-րդ փառատոնին մասնակցելու համար Լեհաստանի մայրաքաղաք էին ժամանել աշխարհի 114 երկրներից 81 հազար երիտասարդներ, որոնք ներկայացնում էին 500 երիտասարդական կազմակերպություններ:

Հերոսիմայի գազանային ռմբակոծման 10 ամյակի օրը փառատոնի մասնակիցները հավաքվեցին միտինգի:

«Մենք պահանջում ենք արգելել ատոմային և ջրածնային զենքը: Մեր պահանջը հիմնավորվում է այն հազարավոր ստորագրություններով, որ մենք հավաքել ենք Խաղաղության համաշխարհային կոմիտեի կոչի տակ», — հայտարարեցին նրանք:

Փառատոնի մասնակիցներին տարբեր երկրների, ժողովուրդների սովորույթներին, պարերին ու խաղերին ծանոթանալուն օգնում էր «Եկեք պարեր ու խաղեր սովորենք» փառատոնային ակումբը, որը գործում էր Միցկևիչի փողոցի զբոսայգում:

Փառատոնի ընթացքում Եվրոպայի 25 երկրների երիտասարդության ներկայացուցիչները քննարկեցին իրենց աշխարհամասի կոլեկտիվ անվտանգության պրոբլեմը:




## Մոսկվա 1957

Մոսկովյան փառատոնը ամենաներկայացուցչականն էր փառատոնային պատմության մեջ. 34 հազար մասնակից 131 երկրներից: Փառատոնի մասնակիցներին միավորում էր «Հանուն խաղաղության և բարեկամության» նշանաբանը: Փառատոնի օրերին տեղի ունեցավ խաղաղությանը նվիրված հզոր ցույց, որին մասնակցում էին կես միլիոն երիտասարդներ: Տեղի ունեցան նաև բազմաթիվ հանդիպումներ, բանավեճեր ու մրցույթներ: Առաջին անգամ փառատոների պատմության մեջ Մոսկվայում բացվեց փառատոնային ուսանողական ակումբ: Հաջողությամբ էին ընթանում նաև միջազգային կինոփառատոնը, մարզական մրցումները:

Համաշխարհային 6-րդ փառատոնը նրա մասնակիցներին հնարավորություն տվեց սեփական աչքերով տեսնելու սովետական ժողովրդի հսկայական ձեռքբերումներն ու նվաճումները, հիմք դրվեց աշխարհի շատ երիտասարդական կազմակերպությունների ու ՀամԼԿԵՄ-ի բազմակողմանի համագործակցությանը:

ԱՇԽԵՆ ԱԲԱՋՅԱՆ

# Անտառի համանվագ

Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Ուրթից վերև մի քնձոտ տանձենի կար: Նրա ո՛չ ծաղկելը տեսանք, ո՛չ ծաղկաթափն ու կանաչելը, ո՛չ խակ ու հասած պտուղները: Բույնը գետնից մի քանի թզաչափ էր բարձր, ճյուղերը՝ խոզի բաշի պես ցից-ցից՝ տարածվել էին աջուձախ, սուր փշերը կարծես թշնամանքով էին նայում կողքի երկնասլաց կաղնիներին ու հաճարենիներին, նազանքով օրորվող բոխուն ու թխկուն, նախանձում նրանց ներդաշնակ տերևների միալար սըլլոցներին: Հենց մութը ձորերն էր մտնում ու լանջերով բարձրանում, մեկ էլ հրաշքի պես ծառերի գագաթներին գիշերահավքերը գրավում էին իրենց տեղերն, ու ըսկըսվում էր... Ոնց որ ձայների ստուգատես լինեն, մի յուրահատուկ մրցություն, որտեղ պարտվող չկար, բոլորը հաղթող էին ու արժանի գլխավոր մրցանակին:

Նրանք երգում էին, ամեն մեկն իր գովքն անում: Մենք՝ սարվոր երեխաներս, խարույկը թեժացնում էինք: Խարույկի տաք շունչը ասես նրանց էլ էր հասնում, ավելի բորբոքում, ու համերգ էր, որ լսում էինք: Գիշերը թանձրանում էր, ստվերները ձուլվում էին մթությանը, թռչնահամերգը խոր հունի մեջ էր մտնում, հենց այդ ժամանակ քնձոտ տանձենու վրայից բուն էր ծղրտում՝ ազդարարելով իր գալուստը: Հետո լացուկոծն էր դնում: Մենք այդ տեսարանին ոչ մի կերպ չէինք կարողանում ընտելանալ: Քանի՛-քանի անգամ փորձել էինք բուին քշել, հեռացնել մեր ուրթից, չէր հաջողվել: Ուրիշ ծառի վրա չէր իջնում: Նույնիսկ որոշեցինք այդ ծառը կտրել կամ հրդեհել, մեծերը զայրացան:

— Ականջնե՛րդ կկտրենք,— ասացին:

Իսկ Մուքել պապը հանգիստ ու անվըրդով բացատրեց.

— Երեխե՛ք ջան, նման նմանին է գտնում, բուի հավանածն էլ էս անպտուղ տանձենին է: Թե չէ ծմակի ծառերը թողած, ինչո՞ւ պետք է գար էդ փշերին նըստեր: Նրա խելքն էլ էնքան է հասնում:

Գարնանից մինչև աշնանամուտ անկուշտ աչքերով ու անկուշտ ականջներով տեսնում ու լսում էինք այս համերգը: Հետո ձմեռն էր սկսվում, հատուկենտ թռչնային ձայներ էին հասնում մեզ, մինչև որ ձյունը ծածկում էր խաշամն ու ջրի ճամփան, լույսը քչանում էր, մութը շատանում, և անտառի հեռավոր խորքերից գայլերը ոհմակներով ոռնում էին, խլացնելով բքի ձայնը.

— Աու՜, աու՜, աու՜...

Գայլերի հետ էլ՝ բորենիներն ու չախկալները, նույնիսկ աղվեսներն ու մանրմունր կենդանիները: Նրանց մեջ տիրակալը, իհարկե, սոված գայլերի սարսուռ ազդող ոռնոցն էր, որ տարածվում էր անտառով մեկ, ուրթով մեկ, աշխարհով մեկ:

— Աու՜, աու՜, աու՜...

Բուքը մերթ խլացնում ու հեռացնում էր գայլերի կաղկանձը, մերթ այնքան մոտեցնում, որ սսկվում էինք, թվում էր՝ ուր որ է կաղնիների արանքից վրա կտան, մարդ ու անասուն չեն թողնի, կհոշոտեն...

— Տերամեռները ահ չունեն...— ասում էին մեծերը, մենք էլ կրկնում էինք նրանց: Իսկ Մուքել պապը, չիբուխը փըռտացնելով ժպտում էր.

— Է՜հ, երեխե՛ք ջան, նրանք էլ են մեղք: Սովը վատ բան է, շատ վատ բան: Ահ ու վախը մոռացնել է տալիս:

Այնպես անչար էին հնչում նրա խոսքերը, որ սկսում էինք խղճալ գայլերին, իսկ Մուքել պապը շարունակում էր.

— Մեր անասուններին ի՞նչ կա. հանգիստ նստել են տաք գոմում, ուրթի մե-



ծից փոքրը նրանցով են զբաղված: Գիշերը քնահարամ ենք լինում, վազում, խոտ լցնում առաջները, մսուրները մաքրում, իրենց մաքրում, նազուտուզը տանում: Խեղճ գայլերն ի՞նչ անեն. ով հասնում է, ճակատներին թրխկացնում է, հայ-հույ անում, հայհոյում, անիծում:

Ինկապես խղճալի էին թվում ոչ միայն գայլերը, այլև անտառի բոլոր գազանները, որոնց անունները տալիս ահաբեկվում էինք: Խեղճ գայլեր... սոված, մրսած, հալածված... Իսկ մեր դանդալոշ գոմեշները, որ այնպես պահում, խնամում, գուրգուրում ենք, մեկ էլ տեսար ջրի ճամփին մոլորվեցին, ձմեռանոց գալու փոխարեն գլուխները կախ՝ չգիտես որ կածանն ընկան ու խորացան ծմակի մեջ: Դե, Մուքել պապ, Հարութ քեռի, հրացանները վերցրեք, մարդաբոյ ձյան միջով լոք-լոք արեք, նրանց հետքերը գտեք, որ գել ու գազանի բաժին չդառնան: Հո մենակ գոմեշները չե՞ն: Բա ոչխարնե՞րը... չես կարող աչքդ թեքել: Ճամփան շեղելու համար գլուխներն իրենցը չի: Այս բոլորը դեռ միայն ջրի ճամփին: Տղամարդիկ անասունների կապերն արձակում են, գոմից դուրս հանում, քշում դեպի մեծ ջրավազանը, իրենք շտապում դեզերից խոտր թափելու, կանայք մսուրներն են մաքրում, հետո վազում խոտի ետևից, երեխաներն էլ՝ նրանց հետ: Անասունները մինչև ջրին հասնելը լուռ ու մունջ, առանց կողքի թեքվելու, գնում են, իսկ վերադարձին չգիտես ինչ է մտնում գլուխները, մոլորվում են, ճամփից դուրս գալիս ու մոռանում իրենց անելիքը:

— Առ՛ւ, առ՛ւ, առ՛ւ...

Գայլերը մղկտալով ոռնում են: Գայլերը սոված են, մրսում են, նրանց հոգսը քաշող չկա:

— Անտառի ամենաքախտավոր կենդանին արջն է,— ասում է Մուքել պապը,— գայլի ու բորենու նման վնգստալով գարնանը չի սպասում, բույնն է մտնում հանգիստ ու թաթը ծծելով՝ քնում: Ձմեռը որքան ուզում է երկարի, բուքը ինչքան ուզում է թող ճամփեքը յիզի:

Մի գիշեր գայլերը շատ մոտիկ ոռնացին, Մարգոն ասաց.

— Պա՛պ, որ ուզենաս բոլորին էլ կըսպանես, էնքան մոտիկ են:

Պապը մտքերի հետ էր, դանդաղ պատասխանեց.

— Է՜, երեխե՛ք ջան, ձեզ որ լսենք, պետք է անտառում կենդանի շունչ չը-

թողնենք: Գայլին սպանենք, արջին սպանենք, խեղճուկրակ բուերին քշենք, բա անտառը առանց նրանց անտառ կլինի՞... Հլա ականջ դրեք:

Ինքը լռեց, մենք էլ՝ հետը: Այդ պահին բուն էլ առնելի չէր, իր քնձռոտ տանձենին էլ, գայլերի ու բքի ռռնոցները գիշերահավքերի համերգի շարունակությունը դարձան, ու հասկացանք, որ անտառը միայն ծառերով ու թփերով, խաշամի խըշշոցով ու աղբյուրների քչքչոցով չէ գեղեցիկ:

Անտառինն են բոլոր հավքերն ու կենդանիները՝ իրենց համերգող, իրենց սարսափազդու և քնքշությունից հալվող ձայներով: Անտառինն էին նաև լուսատիտիկները, որոնք ո՛չ ձայն ունեն, ո՛չ գույն, ո՛չ երգում են, ո՛չ գարնանային ու աշնանային հանդերձանքով պճնվում: Նրանք միայն կայծ ունեն, ակնթարթորեն բռնկվող ու մարող կայծ: Ինձ միշտ թվում էր, թե նրանք ծնվում են անտառում, խոր մթության մեջ, ակնթարթապես, ինչպես կայծքարից դուրս ցայտող կայծերի խուրձը: Կաղնիների արանքից դուրս են գալիս վախվորած, ցրվում փոքրիկ բացատում, ուր մենք էինք, մեր վրանները, մեր խարույկը:

Մի մոգական ու կախարդիչ ուժ ուներ նրանց փոքրիկ լույսը: Խարույկի շուրջը մենք երբեք հանգիստ չէինք նստում: Վազվզում էինք, թռչկոտում, գլուխկոնծի տալիս, իրար հրմշտում, ծեծկռտուք սարքում բայց հենց հայտնվում էին լուսատիտիկները, դադարում էինք աղմկել ու հիացմունքով դիտում էինք այդ հրաշքը, որ քաշում էր մեզ դեպի իրեն: Զգույշ, քնքշորեն որսում էինք նրանց, պահում մեր տաք ափի մեջ, բայց ոչ երկար, որովհետև վախենում էինք, որ կպռկվեն նրանց թևիկները, և լույսը կմարի: Ցերեկով չէինք տեսել նրանց, չգիտեինք, թե ցերեկով ինչ տեսք ունեն: Նրանք գիշերներն էին գալիս, ասես խաղաղեցնելու, ասես հանդարտեցնելու հոգնաշատ առօրյայի ծանրությունը և մեղմությամբ պարուրելու սարեցիների երեկոն: Հետո պինդ մթին, երբ խարույկի բոցերը հոգեվարքի վերջին կայծերով մարում էին ու մոխրանում, երբ փակվել էին ուզում նաև մեր աչքերը, նրանք, ինչպես եկել էին, այնպես էլ անաղմուկ ու աննշմար մտնում էին կաղնիների արանքը, լուծվում գիշերային անտառի մեջ, ամբողջացնելով նրա կատարելությունը:



ԿԱՐՈ ՄԵԼԻՔՍԵԹՅԱՆ

# Ո՞վ է պարապ

Այն ո՞վ է, որ չի աշխատում:
Ամենայն ոք աշխատում է՝
Հունը առվին առաջ նետում,
Առուն ջրտուքն է պտտում,
Իսկ ջրտուքը ամբողջ տարին
Պտտում է ջաղացքարին:
Առավոտը երկրի համար
Արեգակ է բերում սարից,
Հողն իր ձեռքով՝ տաք ու խոնավ՝
Պտուղներ է կախում ծառից:
Ամեն մեկը և բոլորը աշխատում են...
Կավը դառնում է մեծ կարաս,
Թթի տերևն՝ ազնիվ մետաքս,
Առագաստ է հողմը քշում,
Ուռկանը ձուկ է դուրս քաշում:
Լեռը այծին խոտ է տալիս,
Այծն ուլիկին տալիս է կաթ,
Վարդը անուշ հոտ է բուրում,
Փուշը անգամ, թե լավ քննես,
Մի կարևոր բան է բերում:
Գուցե ասեք մու՞թն է պարապ,
Որ ծվարել է անկյունում,
Այդ նա չէ՞, որ գիշերն ամբողջ
Դադրած մարդուն քուն է բերում:



# «Ջինջ երկինք մեզ համար»

Դոլգայա լեռը ձեռքից ձեռք էր անցնում: Թշնամին անողոք էր, դաժան ու չէր զիջում դիրքերը: Իսկ հրամանը մեկն էր. անպայման գրավել բարձունքը:

Եվ Հունանն առաջ անցավ...

Ու մեկ էլ գերմանական քողարկված երկրորդ դզոտը լռեց: Մեծացավ դեպի լեռան բարձունքը գրոհողների թիվը:

Ահա հենց այդ պահն է պատկերված պատանի նկարիչ Մանուկի աշխատանքում:

Նա պատահականորեն չի ընտրել այդ թեման: Աշխատանքը հետո տեղ կգտնի Էջմիածին քաղաքի 2-րդ դպրոցի փառքի սրահի այն բաժնում, որը նվիրված կլինի Հ. Ավետիսյանին:

«Ջինջ երկինք մեզ համար» խորագիրը կրող ցուցահանդեսում, որը նվիրված է Հայրենական մեծ պատերազմի հաղթական ավարտի 40-ամյակին, գրաֆիկական և գեղանկարչական հետաքրքիր գործեր շատ կան:

Հեղինակները՝ Էջմիածնի Ե. Թադևոսյանի անվան մանկական գեղարվեստի դպրոցի սաները, իրենց ներկայացրած աշխատանքների նկատմամբ եղել են շատ խստապահանջ:

Նաիրիի և Սուրենի նկարներում խաղաղ աշխատանքի պահեր են պատկերված:

Պատանի նկարիչները թեմայի ընտրության հարցում հեռու չեն գնացել: Իրենց ծանոթ շրջապատի կյանքն են պատկերել լիրիկական ջերմ գույներով՝ գովերգելով աշխատանքն ու աշխատավոր մարդուն: Ստեղծագործություններն աչքի են ընկնում մանկական անկեղծությամբ ու անմիջականությամբ:

# Եթե ֆիզիկայից կաղում եք...

**Հայկը պարապմունքից տուն եկավ ուշացումով: Բաց անելով թերթի մեջ փաթաթած սարքը, դրեց սեղանին ու միացրեց կոճակը: Ապա համապատասխան ալիքի վրա ընտրեց հաղորդման կետը և հպարտությամբ նայեց ծնողներին ու եղբորը:**

**— Սա իմ երկրորդ ինքնուրույն աշխատանքն է,— ասաց նա:**

**— Քո՞,— հարցրեց եղբայրը:**

**— Ինչու՞ ես զարմանում,— հանգիստ պատասխանեց Հայկը: Նման հարց եղբայրը տվել էր նաև մի քանի ամիս առաջ, երբ տուն բերեց լույսի ավտոմատ կարգավորիչով աշխատող գունային երաժշտության սարքը:**

**— Այս էլ դենք գունային երաժշտության սարքի մոտ,— Հայկը խմբակի ղեկավար ընկեր Հարությունյանին խնդրել էր թույլ տալ տուն բերել:**

**Արսենը ցանկացավ եղբոր հետ գնալ պիոներտուն:**

**— Գնանք, դարձիր մեր խմբակի անդամ,— ճանապարհին ասաց Հայկը: Արսենը հենց այդ ցանկությամբ էլ գնում էր: Միայն թե վստահ չէր իր վրա, ֆիզիկայից լավ չէր:**

**Անիի շրջանի պիոներտան ռադիոսիրողների խմբակի ղեկավար ընկեր Հարությունյանն ասաց.**

**— Լավ չէ, Արսեն, որ ֆիզիկայից թույլ ես, բայց խմբակը քեզ կօգնի, որ դու լավ սովորես, ինչպես օգնեց Աշոտին: Նա էլ երբ խմբակ եկավ, ֆիզիկայից վատ էր: Իսկ հիմա ասում է, որ խնդիրները արդեն ինքնուրույն է լուծում:**

**Արսենը դարձավ խմբակի անդամ:**

Խմբակավարը գոհ է նրանից, ինչպես Երեմից։

Երեմն աշխատում էր մոլտի վիբրատորի վրա։

Նման սարքերն օգտագործվում են էլեկտրոնային խաղալիքներ պատրաստելու համար։

Ուշիմ է Երեմը։ Հետաքրքրասեր։ Գծագիրը վերցրել է «Պատանի ռադիոսիրող» ամսագրից։ Տղան նախ սովորում է դետալները բաշխել սալիկի վրա, ստուգել կոնդենսատորների դիմադրությունը և զոդման ժամանակ զգուշությամբ աշխատել ունելիով։ Դետալները ունելիով է բռնում, որպեսզի զոդման ժամանակ ջերմությունը չանցնի տրանզիստորի մեջ։ Թե անցավ, ուրեմն աշխատանքը կրփչանա։

Եվ դետալ առ դետալ պատանի ռադիոսիրողների շնորհալի ձեռքերի տակ ծնվում են ինքնաշեն սարքերը։

# Եթե գնաք Ստեփանավան...

Հնգաթև աստղը նման է իսկական ժանյակի։ Դա կակտուսի հարյուրավոր տեսակներից մեկն է, որ ծաղկել է՝ ընդունելով ժանյակաձև աստղի տեսք։

Անսովոր տեսքով կակտուսը շատ զարմացրեց և միաժամանակ ուրախացրեց պատանի բնասերներին։

Դա նրանց համար գյուտ էր, անսովոր երևույթ։ Կենսաբանության ուսուցչուհի Սեդա Գրիգորյանը նույնպես զարմացավ այդ անսովոր կակտուսից։

Պատանի բնասերներին, ինչպես նաև ընկեր Գրիգորյանին, այդպես զարմանալու և ուրախանալու շատ առիթներ է տվել և տալիս է նրանց կանաչ լաբորատորիան։ Չկարծեք, թե կանաչ լաբորատորիան դպրոցի կենսաբանության կաբինետն է կամ էլ դպրոցամերձ այգին։

Կանաչ լաբորատորիան սկսվում է դպրոցի մուտքից ու շարունակվում առաջին հարկում, հետո բարձրանում երկրորդ հարկ։

Ամենուր ծաղիկներ են, կանաչ թփեր՝ գեղեցիկ ու հետաքրքիր ձևավորմամբ ծաղկամաններ մեջ։

Երկրորդ հարկում ժանյակաձև աստղի տեսքով կակտուսն է։ Այստեղ կհանդիպես հայ մեծ գրող Ա. Բակունցի գովերգած ալպիական մանուշակին, որը թողել է Գորիսի երկնաքեր ժայռերը, եկել ու հանգրվանել է այստեղ։ Նրա կողքին փառահեղ աճել է չինական վարդը։ Քիչ այն կողմ մեխակներն են ծպտում։ Այլանդրի թերթիկները նազանքով ներքև են սահել։

Կանաչը աչք է շոյում։ Պատանի բնասերները խնամքով թելեր են կապել, որպեսզի պտերներն աճեն ու բարձրանան։ Առասպաղն էլ է կանաչով պատվել։

Ծաղիկների տեսակները դպրոցում քառասունից անցնում են, իսկ քանակն արդեն հնարավոր չէ հաշվել։



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

— Իսկ սա մի շատ սովորական թուփ է,— ասում է Նաիրան։

— Ես կասեի, որ սովորական չէ,— ընկերուհուն ուղղում է Գայանեն։ Այդ սովորական թուփը ունի բաց կապույտ գույնի ծաղիկներ։

Արդեն քանի տարի է պատանի բնասերները նկատել են, որ այդ սովորական թուփը ծաղկում է միայն դեկտեմբերին։ Եվ ծաղկի անունն էլ կնքել են իրենք՝ կոչել «Դեկաբրիստ»։

Երբ առիթ լինի գնալ Ստեփանավան, անպայման այցելեք Հովհ. Թումանյանի անվան դպրոց։

Այնտեղ էլ կտեսնեք այդ ամենը։

ԾԱՎԱՐԾ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Մկրտիչ Կորյունը սովետահայ մանկական գրականության ամենաճանաչված դեմքերից է։ Գրել է բազմաթիվ բանաստեղծություններ, հեքիաթներ, հանելուկներ, պիեսներ ու առակներ, նրա բանաստեղծություններին երեխաները ծանոթ են դեռևս մանկապարտեզից, ապա և դասագրքերից, նրա «Կամո» պատմահեղափոխական վեպը պատանիների սիրած գրքերից է։ Մանկագրի շատ ստեղծագործություններ թարգմանաբար լույս են տեսել նաև Սովետական Միության շատ ժողովուրդների լեզուներով։

## Սովետական բանակ

Մեր մեծ բանակ,
Դու միշտ արի,
Արթուն պահակ
Մեր աշխարհի։

Թշնամու դեմ
Միշտ համարձակ,
Մեր աշխարհի
Փառք ու պարծանք։

Միշտ կլինի
Կանաչ գարուն,
Քանի դու կաս
Մեր աշխարհում։

Ծովում հզոր,
Օդում հզոր,
Մեր մեծ բանակ
Ամենազոր։

## Մոր երգը

Ինքը անուշ,
Լեզուն անուշ,
Իմ բալեն,
Ծափ-ծիծաղի
Կլկլան կուժ,
Իմ բալեն։

Ինքը անուշ,
Լեզուն անուշ,
Իմ բալեն,
Հոգուս միջից
Թռած մի դուշ,
Իմ բալեն։

## Առուն ու ծաղիկները

Ծաղիկների մեջ շշնջաց առուն.
— Սիրու՛ն ծաղիկներ, գարու՜ն է, գարու՜ն...
Լեռնալանջերին եղյամ չի նստում,
Հավքերն են դրսում ուրախ ոստոստում,
Ծիծեռնակներն են երգում տանիքից,
Երկյուղ մի՛ կրեք սառնամանիքից,
Արտույտիկներն են ուրախ ճռվողում,
Ժիր մանուկներին դեպի ձեզ մղում,
Արթնացե՜ք, քնած հո չե՞ք մնալու,
Թիթեռ ու մեղու ձեզ հյուր են գալու...

Այս որ լսեցին ծիլ, ծաղիկ ու խոտ,
Բացեցին իրենց աչքերը շաղոտ,
Քնքուշ ժպտացին, անուշ բուրեցին
Ու ողջ աշխարհը բույրով լցրեցին։

## Ձմռան մի ցուրտ առավոտ

Ձմռան մի ցուրտ առավոտ
Ծիտը թռավ ծտի մոտ,
Ասաց,— Բարև՛, ա՜յ ծիտիկ,
Դու իմ սիրու՜ն խատուտիկ,
Ո՛չ թռչում ես, ո՛չ երգում,
Ի՞նչ ես անվերջ երազում։—
Ասաց.— Գարուն եմ ուզում,
Վազող առուն եմ ուզում,
Ոսկե մարգերն եմ ուզում,
Ուզում եմ ես ծիլ ու խոտ,
Կապույտ երկինք, մաքուր օդ,
Արտեր, արտեր, շող ու շաղ,
Բացված վարդեր, երգ ու տաղ,
Առանց գարնան արևի,
Առանց կանաչ սարերի,
Առանց ծաղկած մարգերի,
Առանց ուրախ երգերի,
Էլ ո՞նց սիրտը ծիտիկի
Ուրախանա ու երգի։
Արի՜, արի՜, ո՜վ գարուն,
Գալի՛ք բարի՜, զո՜վ գարուն,
Ծիտիկներիս բարեկամ,
Ծիլ ու ծաղկի ծո՜վ գարուն։



# Հանելուկներ

Գլխարկը՝ կապույտ,
Շապիկը՝ կանաչ.
Մի փոքրիկ ծաղիկ,
Ամենքիս ճանաչ:

(մանուշակ)

Անձրևը գա,
Դուրս կհանի
Մի գլխանի,
Մի ոտանի:

(սունկ)

Թռչում է՝ հավ չի,
Լողում է՝ նավ չի,
Երգում է այն ժամին,
Երբ մոտ է իր մահին:

(կարապ)

Երկու սիրուն աչիկ ունի,
Մկրատաձև պոչիկ ունի,
Կուրծքն՝ սպիտակ կաթի նման,
Թևերը՝ սև սաթի նման:

(ծիծեռնակ)

Ես մի ծառ եմ ճանաչում,
Չունի տերև, ունի ճյուղ,
Անհող, անջուր է աճում:

(եղջյուրներ)

Ի՞նչ վրան է կապույտ ու լայն,
Հազար-հազար կանթեղ վրան,
Զարմանալին այն է միայն,
Որ չունի սյուն ու հենարան:

(երկինք)

Սպիտակ արտեր,
Վրան՝ սև վարդեր,
Ձեռքով շաղ անեմ,
Աչքով քաղ անեմ:

(գիրք)

Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ՄԻԽԱՅԻԼ ԶՈՇՉԵՆԿՈ

# Կրկնակոշիկները և պաղպաղակը

Նկ. ԼԵՎՈՆ ՀԱՅԿԱԶՈՒՆՈՒ

Երբ ես փոքր էի, պաղպաղակ շատ էի սիրում: Իհարկե, ես պաղպաղակ հիմա էլ եմ շատ սիրում: Բայց այն ժամանակ դա մի տեսակ արտասովոր էր. այնպե՞ս էի սիրում պաղպաղակ:

Երբ, օրինակ, փողոցով անցնում էր պաղպաղակ վաճառողն իր սայլակով, այնքան էի ուզում պաղպաղակ ուտել, որ գլուխս ուղղակի սկսում էր պտտվել:

Իմ քույրիկ Լոլյան նույնպես շատ էր սիրում պաղպաղակ:

Ես և նա երազում էինք, որ ահա, երբ մեծանանք, օրը ամենաքիչը երեք և երբեմն էլ չորս անգամ պաղպաղակ կուտենք:

Բայց այդ ժամանակ հազվադեպ էինք պաղպաղակ ուտում: Մեր մայրիկը թույլ չէր տալիս շատ ուտել: Վախենում էր մրսենք ու հիվանդանանք: Այդ պատճառով պաղպաղակի համար նա մեզ դրամ չէր տալիս:

Եվ ահա, մի անգամ ամռանը մենք Լոլյայի հետ զբոսնում էինք այգում: Եվ Լոլյան թփերի միջից մի կրկնակոշիկ գտավ: Սովորական ռետինե կրկնակոշիկ, ընդ որում՝ մաշված, պատառոտված: Հավանաբար մեկը նետել էր, քանի որ պատառոտված էր:

Ահա, Լոլյան գտավ կրկնակոշիկը և զվարճանալու համար հագցրեց փայտի ծայրին: Քայլում է այգում՝ փայտը գլխավերևում ճոճելով:

Փողոցով անցնում էր հնավաճառը, գոռալով. «Շշե՞ր, բանկանե՞ր, փալասնե՞ր առնեմ...»:

Տեսնելով, որ Լոլյան փայտի ծայրին կրկնակոշիկ է հագցրել, հնավաճառը ասաց Լոլյային.

— Է՜յ, աղջի՛կ, կրկնակոշիկը վաճառում ե՞ս:

Լոլյան մտածեց, որ դա խաղ է, և հնավաճառին պատասխանեց.

— Այո՛, վաճառում եմ: Այս կրկնակոշիկը արժե հարյուր ռուբլի:

Հնավաճառը ծիծաղեց և ասաց.

— Ո՛չ, այդ կրկնակոշիկի համար հարյուր ռուբլին չափազանց շատ է: Եթե ուզում ես, աղջի՛կս, ես դրա համար քեզ երկու կոպեկ կտամ, և մենք կբաժանվենք բարեկամաբար:

Այս խոսքերի վրա հնավաճառը գրպանից հանեց դրամապանակը, Լոլյային երկու կոպեկ տվեց, մեր պատառոտված կրկնակոշիկը խցկեց պարկի մեջ և գնաց:

Ես և Լոլյան հասկացանք, որ դա խաղ չէր, այլ իսկական էր, և շատ զարմացանք:

Հնավաճառը վաղուց արդեն գնացել էր, իսկ մենք կանգնել ու նայում էինք դրամին:

Հանկարծ փողոցով անցնում է պաղպաղակ վաճառողն ու կանչում.

— Մրգահյութով պաղպաղա՜կ:

Ես և Լոլյան մոտ վազեցինք պաղպաղակ վաճառողին, հատը մեկ կոպեկով երկու օղակ գնեցինք, նույն պահին կերանք ու ափսոսացինք, որ այդքան էժան էինք վաճառել կրկնակոշիկը:

Մյուս օրը Լոլյան ինձ ասում է.

— Մի՛նկա, այսօր ես որոշել եմ ևս մի կրկնակոշիկ վաճառել:

Ես ուրախացա և ասացի.

— Լո՛լյա, դու թփերի մեջ նորից կրկնակոշիկ ես գտե՞լ:

Լոլյան ասում է.

— Թփերի մեջ էլ ոչինչ չկա: Բայց մեր միջանցքում, իմ կարծիքով, երևի ավելի քան տասնհինգ կրկնակոշիկ կա: Եթե մենք մեկը վաճառենք, դրանից մեզ ոչ մի վատ բան չի լինի:

Այս խոսքերի վրա Լոլյան վազեց ամառանոց և շուտով հայտնվեց այգում՝ մի բավականին լավ և գրեթե նոր կրկնակոշիկ ձեռքին:

Լոլյան ասաց.

— Եթե հնավաճառը երկու կոպեկով գնեց այն ցնցոտին, որ անցյալ անգամ նրան վաճառեցինք, ապա այս համարյա թե նոր կրկնակոշիկին նա, հավանաբար, մեկ ռուբլուց պակաս չի տա: Պատկերացնում եմ, որքան պաղպաղակ կարելի է գնել այդ դրամով:

Մի ամբողջ ժամ մենք սպասում էինք հնավաճառի հայտնվելուն, և երբ վերջապես նրան տեսանք, Լոլյան ինձ ասաց.

— Մի՛նկա, այս անգամ կրկնակոշիկը դու՛ վաճառիր: Դու տղամարդ ես, դու՛ խոսիր հնավաճառի հետ: Թե չէ, նա նորից ինձ երկու կոպեկ կտա: Իսկ դա շատ քիչ է:

Ես փայտի ծայրին հագցրի կրկնակոշիկը և փայտը սկսեցի ճոճել իմ գլխավերևում:

Հնավաճառր մոտեցավ մեր այգուն և հարցրեց.

— Ի՞նչ է, նորի՞ց կրկնակոշիկ է վաճառվում:

Ես հազիվ լսելի ձայնով ասացի.

— Վաճառվում է:

Հնավաճառր կրկնակոշիկր զննելուց հետո ասաց.

— Ափսո՜ս, երեխանե՛ր, որ դուք շարունակ ինձ մեկական կրկնակոշիկ եք վաճառում: Այս մի կրկնակոշիկի համար ես ձեզ հինգ կոպեկական կտամ: Իսկ եթե դուք ինձ միանգամից մի զույգ կրկնակոշիկ վաճառեիք, ապա քսան և անգամ երեսուն կոպեկ կստանայիք, քանի որ երկու կրկնակոշիկը մարդկանց ավելի պետքական է: Այդ է պատճառը, որ գները խիստ ընկնում են:

Լոլյան ինձ ասաց.

— Մի՛նկա, վազիր ամառանոց և միջանցքից և՛ս մի կրկնակոշիկ բեր:

Ես վազեցի տուն և շուտով բերեցի շատ մեծ չափսերի մի կրկնակոշիկ:

Հնավաճառը խոտի վրա կողք-կողքի դրեց երկու կրկնակոշիկները, տխուր հոգոց հանեց և ասաց.

— Ո՛չ, երեխանե՛ր, դուք ինձ վերջնականապես հուսահատեցնում եք ձեր առևտրով: Մի կրկնակոշիկր կանացի է, մյուսր՝ տղամարդու. դատեցեք ինքնե՛րդ, ինչի՞ս են պետք նման կրկնակոշիկներր: Ես ցանկանում էի մեկ կրկնակոշիկի համար ձեզ տալ հինգ կոպեկ, բայց երկու կրկնակոշիկներր կողք-կողքի դնելով, տեսնում եմ, որ այդ չի լինի, քանի որ այդ գումարումից գործը վատանում է: Երկու կրկնակոշիկի համար ստացեք չորս կոպեկ, և մենք կբաժանվենք բարեկամաբար:

Լոլյան ուզում էր վազել տուն՝ էլի ինչ-որ կրկնակոշիկ բերելու, բայց այդ պահին լսվեց մայրիկի ձայնը: Մայրիկը մեզ տուն էր կանչում, քանի որ հյուրերը ցանկանում էին մեզ հրաժեշտ տալ: Հնավաճառր



տեսնելով, որ մենք շփոթված դեսուդեն ենք նայում, ասաց.

— Այսպիսով, բարեկամնե՛ր, այս երկու կրկնակոշիկների համար դուք կարող էիք ստանալ չորս կոպեկ, բայց դուք կըստանաք երեք կոպեկ։ Մի կոպեկը ես հանում եմ այն պատճառով, որ իզուր տեղը ժամանակս վատնում եմ երեխաների հետ դատարկ խոսակցության վրա։

Հնավաճառը Լոլյային տվեց երեք հատ մի կոպեկանոց և, կրկնակոշիկները պարկի մեջ թաքցնելով, հեռացավ։

Ես ու Լոլյան նույն պահին վազեցինք տուն և սկսեցինք հրաժեշտ տալ մայրիկի հյուրերին՝ մորաքույր Օլյային և քեռի Կոլյային, որոնք արդեն միջանցքում հագնըվում էին։

Հանկարծ մորաքույր Օլյան ասաց.

— Ի՞նչ տարօրինակ բան է։ Մի կըրկնակոշիկս այստեղ է, կախիչի տակ, իսկ երկրորդը չգիտես ինչու չկա։

Ես ու Լոլյան գույներս գցեցինք։ Եվ անշարժ կանգնեցինք։

Մորաքույր Օլյան ասաց.

— Ես հիանալի հիշում եմ, որ հագիս երկու կրկնակոշիկ կար։ Իսկ այստեղ հիմա միայն մեկն է, որտե՞ղ է երկրորդը՝ հայտնի չէ։

Քեռի Կոլյան, որը նույնպես փնտրում էր կրկնակոշիկները, ասաց.

— Սա ի՞նչ անհեթեթություն է։ Ես էլ հիանալի հիշում եմ, որ եկել եմ երկու կրկնակոշիկով, բայց իմ երկրորդ կրկնակոշիկը նույնպես չկա։

Այս խոսքերի վրա, Լոլյան հուզմունքից բաց թողեց ափը, և երեք հատ մեկկոպեկանոցները զրնգալով ընկան հատակին։

Հայրիկը, որ նույնպես ճանապարհում էր հյուրերին, ասաց.

— Լո՛լյա, որտեղի՞ց քեզ այդ դրամը։

Լոլյան սկսեց ինչ-որ ստեր փչել, բայց հայրիկը ասաց.

— Խաբելուց վատ բան չկա։

Այդ ժամանակ Լոլյան սկսեց լաց լինել։ Ես նույնպես սկսեցի լաց լինել, և մենք ասացինք.

— Կրկնակոշիկները վաճառել ենք հնավաճառին, որպեսզի պաղպաղակ գընենք։

Հայրիկն ասաց.

— Այն, ինչ արել եք, խաբեություն է։

Լսելով, որ կրկնակոշիկները վաճառված են հնավաճառին, մորաքույր Օլյան գույնը գցեց, և ոտքերը թուլացան։ Քեռի Կոլյայի ոտքերն էլ թուլացան, ու նա բռնեց սիրտը։ Բայց հայրիկը նրանց ասաց.

— Մի՛ հուզվեք, մորաքո՛ւյր Օլյա և քեռի՛ Կոլյա, ես գիտեմ, թե ինչպես պետք է վարվել, որ դուք առանց կրկնակոշիկ չմնաք։ Ես կվերցնեմ Լոլյայի և Մինկայի բոլոր խաղալիքները, կվաճառեմ հնավաճառին և ստացված դրամով ձեռք կըբերենք նոր կրկնակոշիկներ։

Դատավճիռը լսելով, մենք Լոլյայի հետ սկսեցինք ոռնալ։ Բայց հայրիկն ասաց.

— Դա դեռ բոլորը չէ։ Լոլյային և Մինկային արգելում եմ երկու տարի պաղպաղակ ուտել։ Իսկ երկու տարի հետո նրանք կարող են ուտել, բայց ամեն անգամ, պաղպաղակ ուտելիս, թող նրանք հիշեն այս տխուր պատմությունը և ամեն անգամ թող նրանք մտածեն՝ արժանի՞ են արդյոք դրան։

Այդ օրը հայրիկը հավաքեց մեր բոլոր խաղալիքները, կանչեց հնավաճառին և ինչ որ ունեինք՝ վաճառեց նրան։ Եվ ստացված դրամով հայրիկը մորաքույր Օլյայի ու քեռի Կոլյայի համար կրկնակոշիկներ գնեց։

Եվ ահա, երեխանե՛ր, այդ ժամանակից անցել են շատ տարիներ։ Առաջին երկու տարիներին ես ու Լոլյան, իսկապես, ոչ մի անգամ պաղպաղակ չկերանք։ Իսկ հետո սկսեցինք ուտել և ամեն անգամ ուտելիս ակամայից հիշում էինք այն, ինչ եղել էր։

Եվ անգամ հիմա, երեխանե՛ր, երբ արդեն բոլորովին մեծ եմ և անգամ մի քիչ էլ ծեր, հիմա էլ երբեմն պաղպաղակ ուտելիս զգում եմ, որ կոկորդս սեղմվում է, ու դարձյալ ինչ-որ տհաճ բան կա։ Ընդ որում, ամեն անգամ, մանկությանս սովորության համաձայն, մտածում եմ. «Արժանի՞ եմ, արդյոք դրան։ Չե՞մ ստել, չե՞մ խաբել որևէ մեկին»։

Հիմա շատ-շատերն են պաղպաղակ ուտում, որովհետև մեզ մոտ կան բազմաթիվ հսկայական ֆաբրիկաներ, որոնք պատրաստում են այդ համեղ կերակրատեսակը։

Հազարավոր և անգամ միլիոնավոր մարդիկ պաղպաղակ են ուտում, և ես, երեխանե՛ր, շատ կցանկանայի, որ բոլոր մարդիկ պաղպաղակ ճաշակելիս մտածեին այն, ինչ ես եմ մտածում այդ քաղցրեղենը ուտելիս։

Թարգմ. ԳՐԻԳՈՐ ՎԱՐԴԱՆՅԱՆԸ

## ՈՒՍՈՒՑՉԻ ՕՐԱԳՐԻՑ



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

ԳԱՌՆԻԿ ՄԿՐՏՉՅԱՆ

# Սովորեցնում եմ, նաև սովորում

### 5. ԵՐԿԱՐՈՂ ԵՐԿԱՐ ԴԱՍԱՄԻՋՈՑԻՆ

Արշակի քառորդային գնահատականը նախորդների համեմատությամբ ցածր էի նշանակել: Լավ չէր աշխատել: Կարծել էր՝ կգնահատեմ ոչ թե արդյունքը, այլ ընդունակությունները, հնարավորությունները: Գնահատելուց հետո զրուցեցի, ասացի, որ ամեն ինչի հիմքը աշխատասիրությունն է, բերեցի կոնկրետ օրինակներ, և թվաց, թե հասկացավ ինձ: Իսկ հաջորդ օրը, չսպասելով ծնողական ժողովին, դպրոց եկավ հայրը: Առաջին անգամ էինք իրար տեսնում: Հանգիստ, վստահ լինելով, որ զրույցը ցանկալի արդյունք կտա, համոզված, որ մեր աշխատանքները իրար պիտի լրացնեն, նրան նույնպես բացատրեցի ցածր գնահատելու պատճառը: Ասացի նաև, որ դա Արշակին կօգնի սթափվելու, պարապելու համար, կդառնա խթան: Հակառակ սպասածիս՝ հայրը հանկարծ բորբոքվեց, դասարանում՝ աշակերտների մոտ ձայնը բարձրացրեց.

— Դու՛ք, երիտասա՛րդ, ձեզ սխա՛լ եք պահում... Իմ Արշակը...— Եվ սկսեց տղային պաշտպանել, գնալով տաքացավ, և վերջում թե.

— Գնանք դիրեկտորի մոտ... Խղճում եմ, չեմ ուզում ճանապարհիդ քար գցել...

Կարկամած լռեցի: Ամբողջ երկար դասամիջոցին Արշակի հոր մենախոսությունը մի պահ չընդհատվեց: Ծանր րոպեներ էին: Աչքի տակով նայեցի երեխաներին: Մի մասը գլխահակ կանգնել էր, Կարենը կարծես եղունգները ատամներով ուզում էր պոկել, Ռուկուհու սրտի անհանգիստ բաբախումը թվաց լսելի է, իսկ Արշակը կծկվել էր վերջին նստարանին: Երևի առաջին անգամ էր, որ երեխաներն էլ էին դժգոհ երկարող երկար դասամիջոցից: Մենախոսությունն ունկնդրելիս ավելի շուտ մր-

տածում էի երեխաների մասին: Բայց ավարտական նախադասությունը, որ ասաց զանգը հնչելուց հետո, շշմեցուցիչ էր: Քիչ մնաց զարմանքից... հառաչեի:

— Քո տարիքի չափ մանկավարժ եմ աշխատել, —գոռաց երեսիս:

Գնաց: Լուռ նստեցինք մեկ-երկու րոպե: Դասարանը ուշադիր ինձ էր նայում. ի՞նչ պիտի անեմ, ի՞նչ պիտի ասեմ: Ամենից շատ Արշակն էր ազդվել, շատ ընկճված տեսք ուներ: Իսկ մյուսները հետզհետե, ըսկըզբում կամացուկ, սկսեցին խոսել.

— Ընկե՛ր Մկրտչյան, լավ արեցիք, որ չխոսեցիք:

Ուրեմն՝ իմ համբերությունը քննություն էր բռնել աշակերտների մոտ: Նրանք գոհ էին: Դա լավ էր, հասկացել էին, թե ով ճիշտ վարվեց:

Երեխաները նաև միրավորված էին, որ Արշակի հայրը իր տղային բացահայտորեն գերադասեց մյուսներից «Իմ Արշակը սըրանցից էլ է պակա՞ս»,— ասել ու ցույց էր տվել մյուս բոլորին: Բայց երեխաները կարծես ուզում էին նախ և առաջ ինձ սփոփել, ինձ Արշակի հորից գերադասելով: Դրա կարիքը արդեն չկար, Արշակը առանց այն էլ շատ էր ազդված. երբ նա ստեպ-ստեպ նայում էր հորը, նրա հայացքում ցավ էի տեսնում:

Հետո ձայները ավելի համարձակ դարձան, հիմա էլ կշտամբանք կար՝ ուղղված Արշակին: Նա գլուխն ավելի կախեց. բայց չէ՞ որ մեղավոր չէր: Այն պահին, երբ երեխաներին թվում էր, թե իրենց հետ ես էլ եմ բորբոքվել, միջանկյալ, կարծես հենց այնպես, ասացի.

— Արշակն այս քառորդում անպայման լավ կառվորի, իսկ հայրը մի փոքր բարկացել էր, ոչինչ:

Հետո սովորական, չափազանց սովորական ձայնով ասացի դասի առաջին, հանրածանոթ նախադասությունը.

— Բացեք գրքերը և տետրերը: Հերթապա՛հ, ովքե՞ր են բացակայում, ի՞նչ է հանձնարարված:

Իսկ դասամիջոցին ամբողջ դասարանով, ամեն ինչ մոռացած, քննարկում էինք, թե «Արարատը» այս տարի ինչ կազմով հանդես կգա:

## 6. ՋՅՈՒ՛Ն, ՍՊԻՏԱ՛Կ ՋՅՈՒՆ, ՀԱՆԴԱՐՏ ԻՋԻՐ ԴԱՇՏԵՐԻՆ...

Ձյունը կամացուկ ու միալար իջնում էր: Տարվա առաջին իսկական ձյունն էր... Իսկ այդ ժամանակ դասարանում հանգիստ նստելը ուշադրությամբ լսելը, դըժվար, անչափ դժվար է: Հայացքները ինքնաբերաբար պատուհանին էին ուղղվում, և ամուր իրար սեղմված շուրթերից զգացվում էր, որ հազիվ են ուրախությունն ու հիացմունքը զսպում: Աչքերով իրար հուշում էին դուրս նայել, փաթիլն օրորվելով, նազանքով իջավ փաթիլին ու ապրեցին, ջուր չդարձան, բարալիկ, նրբին ճերմակությունը փռվեց փողոցների վրա: Ի՞նչ անել, անիմաստ էր դասն ըստ ծրագրի ու պլանի շարունակելը, չնայած խիստ հրահանգ ունեի՝ նախատեսվածը չխախտել: Մի պահ վարանեցի: Եվ այդ պահը դասարանը արագորեն ընկալեց, զգացին իմ երկմըտանքը: Ծնորհակալ եմ Արամից, վերջին նստարանին նստող, դպրոցում տարածված մակդիրների համաձայն՝ «անշնորհք», «անըզգա» Արամից: Հանկարծ արտասանեց.

**Ձյու՛ն, սպիտա՛կ ձյուն,**
**Հանդարտ իջի՛ր**
**դաշտերին...**

Եվ հասկացա, որ երեխաներս այժմ, առավել քան երբևէ ծարավի են զուլալ բանաստեղծության, որ այսօր ոչ թե կանոններ պիտի անգիր տամ, այլ բանաստեղծություններ կարդամ: Զգացի, որ պոեզիայի դասը ավելի կարևոր է և երկար կհիշվի: Եվ այդ բանում ինձ օգնեց «անզգա», հոգու խորքում, սրտի թաքուն ծալքերում չափազանց ըզգայուն ու բանաստեղծական Արամը:

## 7. ԵՐԿՈՒ ԴՐՎԱԳ

Հինգերորդցիների հետ նոր տարվա հանդես էինք պատրաստում: Ավելի ճիշտ, ես միայն դիտում էի և ավելորդ կրքերը աշխատում հանդարտեցնել: Սցենարը գրել էին իրենք, դերաբաշխումը նույնպես ինքնուրույն էին կատարել, ընտրել էին բանաստեղծություններ, երգեր: Ավազակի դերը (նա պիտի գողանար տոնածառը) հանձնարարել էին դասարանի ճարպիկ ու աշխույժ, իր անհնազանդությամբ աչքի ընկնող տղաներից մեկին՝ Արսենին: Ըստ սցենարի՝ բարի ապետները պիտի մենամարտեին նրա հետ, հաղթեին, բայց լսելով ավազակի խնդրանքները՝ թողնեին, որ մասնակցեր տոնական հանդեսին: Բայց փորձի ժամանակ Արսենը հանկարծ ընդդիմացավ.

— Չէ՛, համաձայն չեմ,

ես իրենցից ուժեղ եմ, ինչու՞ պիտի զուր տեղը խընդրեմ: Կասեմ՝ դե լավ, տալիս եմ, որ հանդեսն անեք, ես էլ կգամ ձեզ հետ:

Բացատրեցինք, համոզեցինք, որ սա բեմադրություն է, ինքը պարզապես դերակատար է և այլն: Թվաց, համակացավ, ընդունեց մեր ասածը: Բայց հանդեսի ժամանակ, կարծես հենց այնպես, բերանից թռցրեց.

— Ձարուհին (Ձյունանուշիկը) չլիներ, չէի տա...

*

Արսենի հետ Ձարուհին և Աշխենը վիճել էին: Արսենը իրեն վատ էր պահել դասի ժամանակ, չէր թողել, որ դասը լսեին, աղջիկներն էլ բողոքել էին: Ուսուցիչը նկատել էր աղջիկների վրդովմունքը և Արսենին պատժել: Մի քանի օր չէին խոսում իրար հետ:

— Խաբարբզիկներ,— անիծ-անառիծ նետում էր Արսենը:

... Այդ օրը դասերը շուտ էին վերջացել, և երեխաները դպրոցի բակում որոշել էին խաղալ: Ուրիշ դպրոցից երկու ութերորդցի մոտեցել էին, միացել խաղացողների խմբին, հետո վիճել էին ու վիրավորել, կոպտել Աշխենին, Կարինեին, Ձարուհուն: Տղաները երկնչել էին. նրանք երկու տարով մեծ էին, բարձրահասակ: Եվ միայն Արսենն էր ընդդիմացել, թույլ չէր տվել աղջիկներին ուղղված վիրավորական խոսքերը շարունակել: Ճիշտ է, դրանից հետո աչքի տակ կապույտ բիծ էր ծեփվել, բայց միջանցքներով քայլում էր հըպարտ-հպարտ, արժանապատվությամբ: Եվ, բացի այդ, աղջիկների հետ հաշտվելու առիթ էր ներկայացել:

ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# Բարին կամենանք եկած նորերին

Արշալույսները ծննդավայրիս,
Մայրամուտները ծննդավայրիս
Որոնում են ինձ տաքուկ շողերով՝
Մեկն արևելքից,
Մեկն արևմուտքից.
— Այստեղ էր: Ու՞ր է...
Ու՞ր է այն տղան:
Մի՞թե գիշերն է փախցրել նրան...

Գուցե ծկներն են իրենց մեջ առել,
Գուցե աստղերն են հմայել տարել:

Գուցե քարերն են մի բան իմանում...
Այդ ու՞մ անունն են խոտերը տանում,
Հանձնում թփերին սար ու ձորերի...

Չկա՞... ի՞նչ արած:
Ափսո՜ս որ չկա...
Բարին կամենանք եկած նորերին...

Արշալույսները ծննդավայրիս,
Մայրամուտները ծննդավայրիս
Իմ նամփան էին ողողում սիրով՝
Մեկն արևելքից,
Մեկն արևմուտքից...

# Թող ծնվեն իմ մեջ...

Թող հոսեն իմ մեջ քար ու քարափներ,
Թող խշշան իմ մեջ տեղատարափներ,
Թող աճեն իմ մեջ ծառեր ամեհի,
Թող ծնվեն իմ մեջ խարույկները հին,
Թող բուրեն իմ մեջ ծառ ու ծաղկունքներ,
Թող ծփան իմ մեջ գետ ու ակունքներ,
Ներհոսի իմ մեջ երկիրը հայոց՝
Արյան ողներով
Ու սիրո պահոց,
Որ իմ ակունքից ես չհեռանամ,
Անցյալն ու վաղը իմ չմոռանամ.
Ուզեմ առանց սուտ դռներ բախելու,
Դրանց արցունք ու վշտեր ծախելու.
Երկրիս բախտի պես
Հպարտ ու դաժան,
Կամքով առնեցուն,
Մահվամբ անբաժան...

Նկ. ՀՈՎՆԱՆ ԿԱՐԱՊԵՏՅԱՆԻ



# Մանկության օրեր...

ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ

## Խնձորենու շիվը

Խնձորենու շիվը ելնի.
Ելնի. ելնի. երկինք հասնի.
Խնձորենու շիվը ծաղկի,
Աստղերի հետ ասի-խոսի:

Ծաղիկն ընկնի, պտուղն աճի,
Աճի, աճի ու քաղցրանա,
Աստղագնացն այնտեղ ուտի
Եվ ավելի վեր բարձրանա:

Նկ. ՄԻՀՐԱՆ ՔԵՉՕՂԼՅԱՆԻ





ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

## Մաշված կոշիկներիս և զոլավոր բլուզիս մասին

Այդ օրը, մարմնամարզության դասին, երբ թռիչք պիտի կատարեի, կոշիկիս կիսապոկված ներքանը դեմ առավ ինչ-որ բանի ու ես փռվեցի գետնին: Մինչ ես թափ էի տալիս փոշոտված շորերս ու զննում կարկատաններն մեջ կորած կոշիկներս, ընկերներս ուրախ կատակում էին:

Հազիվ զսպելով լացս, մի կողմ քաշվեցի: Տուն դարձա ընկճված, նեղացած՝ չըգիտես ումից, ու մորս վճռականապես հայտնեցի, որ այդ կոշիկներով այլևս դըպրոց չեմ գնա: Մայրս ինքն էլ գիտեր, որ իրավացի եմ, սակայն... ինչպե՞ս ձեռք բերեր նոր կոշիկներ:

Մի հեռավոր ազգական ունեինք՝ թիթեղագործ Խորենը: Նրա երկու որդիներն ու ես հասակակիցներ էինք: Առաջին անգամ չէր, որ այդ երջանիկ տղաների հնամաշ կոշիկներն ինձ փրկում էին նեղ դրությունից: Շալն ուսին գցելով, մայրս այս անգամ էլ գնաց նրանց տուն:

— Էս էլ քո կոշիկները,— ասաց նա, վերադառնալով մի փաթեթ կռնատակին: — Մի քիչ քանդված տեղեր կան, ոչինչ, ախպերդ կկարկատի:

# ԹՅԱՆ

Նայում եմ, շուռումուռ տալիս: Դե, իհարկե, սրանք ուրիշ կոշիկներից ավելի լավ վիճակում են՝ սև, ճտքավոր: Բայց սա ի՞նչ է, նախ երկուսն էլ աջ ոտքի են, հետո մեկի քիթը սուր է, մյուսինը՝ կլոր:

— Ես դրանք հագնողը չեմ,— կտրականապես հայտնեցի ես:

Պետք է նայեիք խեղճ մորս դեմքին, ավելի մեծ վիշտ պատճառել չէր կարելի նրան: Ինչ հնարքներ ասես, որ չէր գործադրել ինձ դպրոց ուղարկելու համար... Ու հիմա թախանձագին համոզում էր, որ բերած կոշիկներով միաժամանակ չոլա գնամ, դասերից ետ չընկնեմ, մինչև մի ճար գտնի: Բայց ես անդրդվելի էի:

Դուռը ճռռալով բացվեց, ու ներս մտավ եղբայրս՝ Արծրունը՝ հոգնած ու գունատ: Նա աշակերտ էր մի մասնավոր կոշկակարի մոտ:

Վատ էր սկսվել այդ օրը ինձ համար, վատ էլ վերջացավ: Մշտապես սիրով ու հոգատարությամբ վերաբերվող եղբայրս, որ այդ օրը, ով գիտի ինչ պատճառով, տուն էր վերադարձել մռայլ տրամադրությամբ, իմանալով տեղի ունեցածը, խիստ նեղացավ վրաս ու վերջում էլ մի լավ ծեծեց:

— Ես էս տարիքում, (նա ինձնից 2 տարով էր մեծ),— մի կտոր հաց վաստակեմ, որ դու դպրոց գնաս, ինձ նման անգրագետ չմնաս, իսկ դու կոշիկի քթի սուրն ու բութն ես հարցնու՞մ,— գոչում էր՝ վըրդովմունքից ձեռք չտալով սեղանին դըրված աղքատիկ ընթրիքին:

Երկար, շատ երկար լացեցի այդ երեկո: Ոչ այնքան եղբորս ծեծն էր մղկտացնում ինձ, որքան մեր անօգնական ու դառը վիճակի գիտակցումը: Այդպես էլ հեկեկալով ես քուն մտա:

Առավոտյան ինձ սովորականի պես արթնացրին արևի շողերը, որ ընկել էին դեմքիս: Երեկվա ծանր հիշողությունը հոգուս խորքում՝ մի հայացք գցեցի եղբորս անկողնուն, որն արդեն դատարկ էր (նա գործի էր գնում դեռ լույսը չբացված): Եվ, ա՜յ քեզ հրաշք, անկողնուցս փոքրինչ հեռու նկատեցի մի զույգ համարյա նոր կոշիկներ: Ապա հայացքս դանդաղ սահեց կոշիկների կրունկներից դեպի քթերը... Եվ գիտե՞ք որքան զարմացա ու հրճվեցի. միաձև էին, երկուսն էլ կլոր: Այս որտեղից մի գիշերվա ընթացքում ճարվեցին սրանք: Նկատելով զարմանքս, մայրս բացատրեց: Դա իմ եղբոր գործն էր: Նա չէր կարողացել քնել: Ամբողջ գիշերը նստել ու մորս բերած հին կոշիկները ձևափոխել, վերակարել էր, որ ես առավոտյան կարողանամ դպրոց գնալ:

Ինչե՜ր ասես չի անի հնարամիտ հայ կինը, երբ կարիքը ստիպի: Ինքնաբերաբար այդ մասին եմ մտածում, երբ հիշում եմ, թե ինչ ջանքեր էր գործադրում խեղճ մայրս իր որբացած որդիներին կերակրելու և հագցնելու համար:

Բլուզս մաշվել էր, տեղ-տեղ կարկատված էր:

— Էլ սրանով դպրոց չեմ գնա,— ըմբոստացա ես:

Մայրս հանեց բոխչան, շուռ ու մուռ տվեց հին կտորտանքը... Մեկ էլ դեմքը պայծառացավ, ելքը գտել էր: Ինչ-որ տեղից դուրս քաշեց սևագույն, բայց ամբողջովին խունացած մի հովանոց:

Ի՞նչ է ուզում անել, մտածում եմ ու ոչ մի կերպ չեմ հասկանում: Իսկ նա տապակ առ տապակ հանեց հովանոցի եռանկյունաձև շերտերը, շարեց մի կողմ: Ապա դրանք բոլորը լվաց, չորացրեց ու արդուկեց: Նա շարունակում էր տքնել, չափում ու ձևում էր, շուռ ու մուռ տալիս կտորտանքը, ջանում դրանցից ինչ գնով էլ լինի, մի բլուզ հարմարեցնել:

Երկար հետևում էի նրա ջանադիր աշխատանքին, հոգեպես տանջվում պատճառած չարչարանքի համար: Արդեն ուշ էր, դառնացած պառկեցի քնելու: Որքա՞ն է աշխատել մայրս, գիշերվա մինչև ո՞ր ժամը, չգիտեմ: Երբ առավոտյան զարթնեցի, անկողնուս մոտ գտա իմ նոր բըլուզը՝ կարված խունացած հովանոցի կըտորներից: Հնարամիտ մայրս կարողացել էր եռանկյունաձև տապակները բլուզի մեջ այնպես «մոնտաժել», որ բոլոր զոլերը գտնվում էին ներքևում, մեկ գծի վրա...

# ՄԻՐՈՆ ՆԵՍՏԵՐՉՈՒԿ

*Հայ մանուկներին,*
*Ձեր՝ Միրոն Նեստերչուկ:*
*ք. Ստրի*



Միրոն Նեստերչուկը ապրում ու ստեղծագործում է Լվովի մարզի Ստրի քաղաքում: Քառասունհինգամյա բանաստեղծը երեք ժողովածուների հեղինակ է: Իջևանի շրջանի գրական միավորման հրավերով շրջել է Հայաստանում, սիրել է մեր երկիրը, սովորել հայերեն: Նրա վերջին ժողովածուն ողողված է Հայաստանին ու հայ ժողովրդին նվիրված ջերմ տողերով: Միրոնը նաև նկարում է: Հայկական թեմաներով նրա նկարաշարքը ցուցադրվել է Կիևում, Լվովում, Ստրիում, ինչպես նաև Հայաստանում:

ՀԱՂԱՐԾԻՆ



## Հայ բարեկամիս

Հայաստանի հեռավոր դու անմոռաց իմ ընկեր
Ձեր լեռներն եմ սիրում ես, ինչպես սարերն իմ չքնաղ...
Գիտեմ, աշուն է հիմա, անտառն արծաթ է հագել,
Ձեր քարերին նստած է արևախինդ մի ծիծաղ:

Կովկասյան խոր կիրճերում Զանգուն է քո հոսում հար,
Կարպատներում փոթորկուն՝ Ստրի գետն իմ հարազատ,
Ու հայրեր ենք կորցրել, ես՝ քո, իսկ դու՝ ինձ համար,
Որ մենք ապրենք ապահով երկնքի տակ այս ազատ:

Մեր հայրերը ընկան, որ շողա արև մի պայծառ...
Արդ կրակ են դարձել բորբ, փառքի ճամփա
այս կյանքում,
Հայաստանում քարաշատ, Ուկրաինայում անծայր
Կոթողներ են մխրճված բիլ ու անամպ երկնքում...

... Հիմա հողում ձեր քարոտ, արտի ծփանք կա խաղաղ,
Հարթության մեջ՝ մի անծայր, անվերջ նորի արարում...
Քեզ եմ հիշում ես հիմա, քե՛զ, անմոռա՛ց իմ ընկեր,
Ձեր լեռներն եմ սիրում ես, ինչպես սարերն իմ չքնաղ...

Ուկր. թարգմ. Թ. ՄԱՅԻԼՅԱՆԻ

ԳՐԻԳՈՐ ՆԱՐԵԿԱՑԻ
ՄԵՍՐՈՊ ՄԱՇՏՈՑ
ԾԻԾԵՌՆԱԿԱԲԵՐԴ







ԳԱՐԵԳԻՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

## Շուշան քույրերը

Երկու ջրի կաթիլի պես
Իրար նման երկու ծաղիկ
Ծաղկում էին, բուրում այնպես
Մի պարտեզում չնաշխարհիկ:

Բայց բաժանեց նրանց քամին,
Քշեց ուրիշ, հեռու աշխարհ.
Մի հովտի մեջ թողեց մեկին,
Իսկ մյուսին՝ ջուրը տարավ:

Անցան օրեր: Արևը մայր
Եկավ փնտրեց զույգ քույրերին.
Դե, իհարկե, նրանց գտավ,
Բայց քույրերը նման չէին...

Այն մեկին որ հովտում գտավ,
Կոչեց նրան Հովտաշուշան,
Իսկ մյուսին գտավ ջրում
Եվ անվանեց Ջրաշուշան:

## Երկնքի պարգևը

Գարնան արևով կանաչեց,
Քամու շոյանքից նազ եկավ,
Իմ հնձվոր պապին հանդ կանչեց,
Երբ կիզիչ ամառը եկավ:

Պարկի մեջ ջրաղաց տարվեց,
Ջաղացի քարի տակ ընկավ,
Երբ դարձավ ճերմակ ալյուր,
Պապիս հետ սայլով տուն եկավ:

Երբ արդար լույսը բացվեց,
Իր պարկից տաշտի մեջ ընկավ,
Իմ տատի ձեռքերով հունցվեց
Ու վառվող թոնրի մեջ մտավ:

Կարմրուն, ծաղկուն ու ժպտուն
Տաք թոնրից թռավ, դուրս ընկավ,
Երբ պապիս հարցրի՝ որտեղի՞ց,
Նա ասաց՝ երկնքից ընկավ:



ԱԶԱՏ ԵՂԻԱԶԱՐՅԱՆ

# Մարդկային հոգու ալեկոծված ծովը

Մեզանից ավելի քան հազար տարի առաջ Նարեկա վանքում, որ գտնվում է Վանա կապուտակ ծովի ափին, կրթություն առավ հոգևորականի որդի Գրիգորը և այնուհետև մինչև կյանքի վերջը մնաց վանքում, գրքեր գրեց և հայտնի դարձավ իբրև Գրիգոր Նարեկացի: Նարեկացու «Մատյան ողբերգության» անունով գիրքը տարածվեց ամբողջ Հայաստանում: Ժողովրդի մեջ այն կարճ՝ Նարեկ էին անվանում:

Այն ժամանակներում հայերի մեջ գրքի պաշտամունք կար: Հայտնի են դեպքեր, երբ հասարակ մարդիկ, որոնք, պետք է ենթադրել, հիմնականում անգրագետ էին, դրամ են հավաքել և փրկագնել հերթական նվաճողի գերեվարած գիրքը: Բայց նույնիսկ գրքի նկատմամբ այդպիսի համաժողովրդական պաշտամունքի մթնոլորտում էլ Նարեկի ճակատագիրը առանձնահատուկ է: Նարեկը դնում էին հիվանդի գլխի տակ, հավատալով, որ նրա զորությունից հիվանդը կապաքինվի:

«Մատյանը» դիմումն է՝ աստծուն ուղղված: Գրքի գլուխներից յուրաքանչյուրը Նարեկացին վերնագրել է «Ի խորոց սրտի խոսք ընդ աստուծոյ», այսինքն՝ սրտի խորքից աստծուն ուղղված խոսք: Միջնադարում ի՞նչ կար ավելի բնական, քան աստծուն դիմելը, նրանից ներումն, թողություն ու շնորհներ խնդրելը: Մարդկային կյանքը մեղքերի շարան էր համարվում, կրոնը մարդուն մի երկրորդ կյանք էր խոստանում հանդերձյալ աշխարհում, և ահա այդ կյանքում աստծու ողորմածությանն արժանանալու համար մարդիկ պետք է մաքրագործվեին այս աշխարհում իրենց գործած մեղքերից:

Հայոց գրերի գյուտից անմիջապես հետո Մեսրոպ Մաշտոցը բանաստեղծություններ է գրել, որոնք չափածո աղոթքներ են, մեղքերի թողության և հոգու փրկության աղերս: Հինգ դար հետո Նարեկացու ստեղծած պոեմում այդ առաջին հոգևոր երգերից շատ բան կա, և ընդհանրապես Նարեկացին շարունակեց ու իր բարձրակետին հասցրեց հոգևոր երգերի միջնադարյան զարգացած ավանդույթը:

Նարեկացին իր ժամանակակիցների պես նույնպես հավատացյալ էր, բայց մնացած բոլորից տարբերվում էր մարդու ցավերը հասկանալու և վերապրելու անգերազանցելի կարողությամբ: Նա աստծուն պատմում է մարդու միանգամայն իրական տանջանքների, իրական ողբերգության մասին: Աղոթքի մեջ երևում է

ապրող, տանջվող մարդը, և այդ մարդը արդեն խոնարհ ու անդեմ աղոթող չէ. նա կրքոտ կերպով փրկություն է աղերսում, այդ կիրքը նրա աղերսանքին պահանջի ուժ է տալիս, խոնարհ վանականի ձայնը դառնում է համարձակ ու ըմբոստ: Հորդորելով աստծուն բարեհաճ լինել իր նկատմամբ, Նարեկացին նաև կշտամբում է նրան.

**Ընդե՞ր կարծրացուցանես զսիրտ**
**եղկելոյս՝**
**Զերկնչել ի քէն, անճառ և ահաւոր:**

(Ինչու՞ կարծրացնես սիրտը եղկելուս, անճառ ահավոր, որ զթափանցի երկյուղ այնտեղ:— Աշխարհաբար հատվածները բերվում են Վ. Գևորգյանի թարգմանությունից): Նարեկացին թեև անչափելիորեն հեռու է աստծուն ժխտելուց, բայց և հնարավոր է համարում աստծուն զգուշացնել, որ մարդը կարող է նրա հպատակությունից դուրս գալ:

Երկյուղածությունը աստծու հանդեպ, մարդու չնչինության ու մեղավորության զգացումն ու ինքնաձաղկումը միշտ առկա են եղել հոգևոր բանաստեղծության մեջ, բայց դրանք Նարեկացու պոեմում սրված են ծայրահեղորեն, ինչպես որ ծայրահեղորեն սուր է ապրում նա ինքը՝ մարդկային հոգու տառապանքը: Նարեկացու պոեմը հիշեցնում է ծովի զորեղ տարերքը, նրա ալեկոծությունը: Իր այդ տարուբերումների ու ալեկոծումի մեջ մարդկային հոգին արդեն դառնում է անընդգրկելի.

**Աւաղ աղէտիս, վիշտ վտանգիս,**
**Խաւար ամօթոյս· մութ պատկառանացս.**
**Զիա՞րդ և առ բանիս յանդիմանութիւն**
**համարձակեցայց.**
**Մեծ է ձայնս գուժի և անբերելի՝**
**բողոքս աղաղակի:**
**Քանզի զհոգիս էր իմ տեսանել,**
**Տգեղս և նուաղս և ամենևին ներգևեալս,**
**Յաւովք հեծութեանս ի վերջինս**
**վարեալ վարանումն,**
**Եւ մրճոտեալ աղտեղեալ գունով**
**զազրութեան՝**
**Իբր զպաշտոնատար մեհենի...**

(Ավաղ աղետիս, վիշտ ու վտանգիս, Խավար ամոթիս, մութ անարգանքիս. Եվ ինչպե՞ս պետք է հանդգնեմ բոլորն այդ խոսքով հրապարակել: Մեծ են ողբաձայն աղաղակներն իմ ու անտանելի: Թե հնար լիներ տեսնել հոգիս, Որքան պիտի այն երևար տգեղ, նվաղ, ուժասպառ, լիովին հյուծված, ողբագին ցավով մատնված վերջին վարանումներին, Մրոտված, աղոտ՝ զազրելի գույնով, ինչպես մեհյանի մի պաշտոնատար): Եվ ահա այս զարմանալի աղոթքի մեջ հնչում է մարդու կատարելության պահանջը, այն ինքնին աննախադեպ էր միջնադարում:

Ո՛չ միջնադարում, ո՛չ էլ նոր ժամանակներում մարդու ներքին աշխարհի («սրտի խորքերի») բանաստեղծական այսպիսի զորեղ արտահայտություն չի եղել, որպիսին տեսնում ենք Նարեկացու մոտ: Հեթանոս երգիչները տարված էին արտաքին աշխարհի գույներով, իսկ Նարեկացին բաց է անում մարդու ներքին աշխարհի ծալքերը՝ ողջ խորությամբ:

Հոգու ալեկոծումներն արտահայտելու համար Նարեկացին գործի է դնում ժամանակի հայոց լեզվի ողջ հարստությունն ու հոգևոր բանաստեղծության մշակած բոլոր ձևերը: Այս պոեմը լեզվի շքեղությամբ հավասարը չունի մեր գրականության մեջ: Էջեր են բռնում մարդու մեղքերի թվարկումները, աստծուն բնութագրող բառերն ու որակումները: Բառերի այս հեղեղը կարող էր ծնվել միայն խիկապես բորբոքված հոգուց ու երևակայությունից: Ահա մի օրինակ. «Տեր իմ, տեր, Տուիչ պարգևաց, ինքնաբուն բարի, Ամենից տիրող հաւասարապէս, Միայն արարիչ զբնաւս յոչէից, Փառավորյալ, անքնին, ահեղ, ահարկու, Սոսկալի, հըզօր, սաստիկ, Անտանելի, անմերձենալի, անըմբռնելի, անհիմանալի անճառելի, անտեսանելի, Անզննելի, անշոշափելի, անորոնելի, Անսկիզբ, անժամանակ, անշամանդաղ գիտություն, Աներկնան տեսութիւն· ճշմարիտ էականութիւն, բարձր և խոնարհ, օրհնաբանեալ գոյութիւն»: Եվ սա դեռ բոլորը չէ:

Այսպես, իր պոեմում Նարեկացին պատմում է մարդկային հոգու տվայտանքների, հույսի ու հուսահատության մասին: Հենց սրանով էլ նա հարազատ է հազար տարի իրենից հետո ծնված մարդկանց, դրա համար են այսօր նրան թարգմանում աշխարհի ամենատարբեր լեզուներով, և «Մատյանը» կանգնում է համաշխարհային գրականության գլուխգործոցների շարքում: Եթե ծանոթ չես նրան, չես կարող հասկանալ մեր միջնադարը, որն այնքան շատ բան է տվել մեր մշակույթին, գրականությանը, մեր հոգևոր կերտվածքին:

ՅՈՒ. Գ. ԿԱԶԱԵՎ

# Մարթա

Հաճախ ենք մենք կրկնում, թե մարդը «բնության տերն է»: Եվ կենդանիներին վերևից ենք նայում, ներողամտաբար: Իհարկե, նրանք ինչպե՞ս կարող են մրցել մարդու հզոր բանականության հետ: Բայց շատ բաներում մենք զիջում ենք մեր փոքըր եղբայրներին, նրանց հետ համեմատած՝ մենք՝ «բնության տերերս», մթության մեջ վատ ենք տեսնում, մեր լսողությունը առավել թույլ է, իսկ զգում ենք միայն ամենաուժեղ հոտը: Մենք՝ բարձր կարգի էակներս, սառելուց հետո չենք կենդանանում, ինչպես որ գարնանը կենդանանում են ճանճերը: Մեզ չի հաջողվում աճեցնել կորցրած օրգանները, իսկ բնության ահեղ երևույթները՝ փոթորիկը ծովում, երաշտները, երկրաշարժերը, գետերի վարարումները, հրաբխային ժայթքումները որևէ կերպ կարողանում ենք բացատրել հնարամիտ գործիքների օգնությամբ միայն: Մինչդեռ կենդանիները այդ զգացողությունը ի ծնե ունեն:

Մանկությունիցս մի դեպք եմ հիշում: Ձմեռն այն տարի, նույնիսկ Սիբիրի համար, արտակարգ ցուրտ էր: Ծառերը մերթընդմերթ «կրակում» էին՝ նրանց ներսում հյութը սառչելով, ընդարձակվում էր, պատռում կենդանի հյուսվածքը: Թռչունները հաճախ մեռած գետին էին ընկնում, նույնիսկ ձկների համար դժվար էր. գետը մեկ մետր հաստությամբ սառույց էր կապել, իսկ փոքր գետախորշերը համարյա մինչև հատակը սառել էին: Այսպիսի տեղերում թթվածինը չէր հերիքում, և ձուկը, շնչասպառ լինելով, ինքն էր դուրս թռչում սառցածակից: Գարնանային վարար ջրերը չկարողացան կոտրել սառցե զրահը, և գետը դուրս հորդեց ափերից: Մեր տունը բարձր, թեք դարափին էր, և գարնանային ջրերի ամենավարար ալիքները նույնիսկ դարափի կեսերին չէին հասնում: Դրա համար էլ տանը ոչ ոք չանհանգստացավ. ոչ ոք, բացի մեր Մարթա կատվից: Նա հենց նոր էր ձագեր ունեցել և նրանց հետ ապրում էր կովերի նախրի մոտ, զառիվայր գետափի համարյա ծայրին:

Այդ երեկո նկատեցի, որ Մարթան շատ տարօրինակ գործով է զբաղված: Ձագը ատամներով բռնած, պտտվում էր տան շուրջը, կարծես հարմար տեղ փընտրելով. մոտեցավ խոհանոցի պատուհա-



## ԳԻՏԵ՞Ք, ՈՐ...

Կովերն արոտավայրում խստորեն ութժամյա աշխատանքային ռեժիմ են պահպանում: Մնացած ժամերին անասունները թափառում են տարածքում, որոճում են, հանգստանում: Լեզվով խոտ պոկելն այնքան էլ հեշտ գործ չէ: Կովը լեզուն առաջ է գցում, մի կողմից մյուսը պտտելով պոկում է խոտի փունջը և բերանն է տանում: Ամեն րոպե ծնոտները 30-ից մինչև 90 շարժում են կատարում: Պարզ է, որ այսպիսի տեմպին կենդանիները երկար չեն կարող դիմանալ: Միայն կողքից դիտողին է թվում, թե նրանք այնքան էլ մեծ ջանքեր չեն թափում:

● Ոչխարների հոտայնության զգացումն ուժեղ է: Նրանցից յուրաքանչյուրը գործում է, կարծես, ըստ այս ասացվածքի՝ որտեղ բոլորը, այնտեղ էլ՝ ես: Ամբողջ խմբով միասին լինելու համար ոչխարը նույնիսկ կյանքից կզրկվի: Դեպք է եղել, երբ նրանցից մեկի գլուխն է մտել ծովը նետվել: Այդ ոչխարին հետևել են մյուսները: Հովիվները ջրից դուրս են քաշել կենդանիներին, իսկ նրանք համառորեն



Նկ. ԽՈՐԵՆ ՀԱԿՈԲՅԱՆԻ

նին, թեթևորեն թռավ լուսամուտի գոգին և, ետևի թաթերի վրա բարձրանալով, ձագին օդանցքից ներս գցեց փափուկ բամբակի վրա (մենք դեռ ձմեռային փեղկերը չէինք հանել): Նույն ձևով նա մյուս ձագերին տեղավորեց փեղկերի արանքում: Երբ այս տեղափոխության մասին պատմեցի մորս, նա ուսերը թոթվեց և ասաց.

— Կատվից ի՞նչ սպասես, ախր նրա ուղեղը կատվային է: Գնա հանգիստ քընի՛ր:

Գիշերն արթնացա ուժեղ պայթյուններից, որոնք գալիս էին ներքևից, գետի ուղղությամբ:

— Մայրի՛կ, սա ի՞նչ բան է,— հարցրի:

Մայրս նստեց իմ մահճակալին և ինձ կրծքին սեղմեց:

— Գաղափար չունեմ,— շշուկով արտաբերեց նա:

Այդպես էլ, այդ վիճակում, մինչև լուսաբաց աչք չփակեցինք: Միայն առավոտյան ամեն ինչ պարզվեց՝ ավիացիան ամբողջ գիշեր ռմբակոծել է սառույցը, որպեսզի նրա հոսքն արագացնի:

Սակայն ջրհեղեղը չդադարեց. ընդհակառակը, պղտոր ալիքներն արդեն հարվածում էին զառիթափի գագաթին և մոտենում էին կովերի հանգստավայրին: Միայն կես ժամ հետո հեղեղն անցավգնաց, կարծես չէր էլ եղել: Մենք սարսափից դողում էինք, երբ ջուրն անսպասելի մոտեցավ, մինչև մի քանի քայլ, մեր առմուտքին, ապա դանդաղ սկսեց ետ քաշվել:

— Մարթան ինչպե՞ս իմացավ, որ մեր տունը կփրկվի,— հարցրի մորս:

— Իր կատվային ուղեղով,— շփոթված պատասխանեց մայրս:

---

ծովի խորքն են առաջացել: Հովիվները՝ ոչխարների մի մասին են միայն մեծ դըժվարությամբ կորստից փրկել:



Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ

● 4-րդ դարի վերջում և 5-րդ դարի ըսկզբում Ալեքսանդրիայում ապրում էր Հիպատոյա անունով մի կին: Քչերը գիտեն, որ հենց նա է հայտնաբերել ծովային առաջին գործիքներից մեկը՝ անկյունաչափը: Նրան է պատկանում նաև հեղուկների խտաչափի գյուտը, մի գործիք, որ ապրում է մինչև մեր օրերը:

Հիպատոյայի փայլուն գիտելիքները և առաջադիմական հայացքները հարուցեցին եկեղեցականների զայրույթը: Նրանից պահանջեցին հրաժարվել գիտությունից: Հիպատոյան Ջորդանո Բրունոյի նըման ընտրեց մահը, բայց մնաց անսասան:

● Անգլիայում հրատարակվել է մի գիրք, որտեղ նշված են համաշխարհային հըռչակ ունեցող ձախլիկները: Ցուցակը գըլխավորում է հռոմեացի Տիբերիոս կայսրը, այնուհետև գալիս են իտալացի նկարիչ և գիտնական Լեոնարդո դա Վինչին, բրիտանական արքա Ջորջ 2-րդը և բազմաթիվ այլ նշանավոր անձնավորություններ: Ցուցակը եզրափակում է Չարլի Չապլինը:




1. Սովետական Միության հերոս— 8, 12, 2, 18, 15, 4, 19, 8, 16։

2. «Ազատարար զինվորը» քանդակի հեղինակը.— 12, 5, 29, 2, 18, 15, 29։

3. Հերոս քաղաք— 1, 15, 16, 4, 24։

4. Մարտական շքանշան— 7, 8, 9, 10, 15։

5. Զինվորական աստիճան— 20, 11, 12, 8, 24, 8, 27։

6. «Գարնան տասնյոթ ակնթարթ» ֆիլմի հերոսներից.— 28, 18, 15, 3, 27, 15, 14։

7. Հրազենի մաս.— 7, 11, 22։

8. «Մեր գնդի մարդիկ» գրքի հեղինակը.— 30, 8, 16, 33, 8, 13, 19, 8, 16։

9. Երեք մեծ տերությունների ղեկավարների կոնֆերանսի վայրը— 23, 2, 21, 3, 8, 16։

10. Սոցիալիստական երկրի մայրաքաղաք, որի պատվավոր քաղաքացին էր գեներալ-լեյտենանտ, Սովետական Միության հերոս Ս. Մարտիրոսյանը— 17, 3, 8, 32, 8։

11. Զինվորական աստիճան— 4, 2, 3, 31, 8, 16, 18։

12. Ռուսական հինավուրց քաղաք, որտեղ մեր բանակը 1943 թ. ջախջախիչ հարված հասցրեց թշնամուն— 25, 3, 19, 11, 27։

13. Զինվորական փոխադրանացք— 26, 28, 2, 27, 11, 16։

Հարցերին ճիշտ պատասխանելուց և թվերը տառերով փոխարինելուց հետո կկարդաք հաղթանակի օրվան նվիրված հայ բանաստեղծներից մեկի քառատողը։

Կազմեց՝
ԾԱՎԱՐԾ ԽԱՉԱՏՐՅԱՆԸ

**«ՊԻՈՆԵՐ» № 4-Ի ԺԱՄԱՆՑԻ ՊԱՏԱՍԽԱՆԸ**






ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
Հասցեն՝ 375015, Երևան 15, Կարմիր բանակի փողոց № 15։
Հեռախոսներ՝ 56—32—72, 58—08—33, 56—14—96, 56—43—38։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.



ԼՐԱՑԱՎ ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 105-ԱՄՅԱԿԸ. «ԾԱՂԻԿՆԵՐ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՄԱՍՆԱԿԻՑ ՀԱՅ ՄԱՐՏԻԿՆԵՐԻՆ», 1945 Թ.:

Հանձնված է շարվածքի 11. 02. 1985 թ.: Ստորագրված է տպագրության 19. 04. 1985 թ.: ՎՖ 07275: Թուղթ օֆսեթ, $70\times100^{1}/_{16}$: Տառատեսակ՝ Նորք: Օֆսեթ տպագրություն, 2,92 պայմ. մամ. 3,9 հրատ. մամ.: Տպաքանակ՝ 68552: Պատ. 239: Գինը՝ 15 կ.:

Տպագրված է ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարանում, Օրջոնիկիձեի պողոտա 2:

Сдано в набор 11.02.85 г. Подписано к печати 19.04.85 г. Формат $70\times100^{1}/_{16}$ ВФ 07275 Бумага офсетная. Гарнитура «норк». Офсетная печать. 2,92 усл. печ. листа, 3,0 уч.-изд. листа. Тираж 68552. Заказ 239. Цена 15 коп.

Напечатано в типографии изд-ва ЦК КП Армении, пр. Орджоникидзе, 2.



Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝ ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ., ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ.:

Պատասխանատու քարտուղար՝ ՏՈՆՈՅԱՆ Թ., գեղարվեստական խմբագիր՝ ՔԵՉՕՂԼՅԱՆ Մ., տեխնիկական խմբագիր՝ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ծ., սրբագրիչ՝ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ.:

ԳԻՆԸ՝ 15 ԿՈՊ.

ԻՆԴԵՔՍ՝ 77806